


# «ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԲՈՅԵԴՈՎԻՆ՝ ԵՐԱԽՏԱՊԱՐՏ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻՑ»



Լուսանկարը՝ Հ. ԲԱՋԱՆՅԱՆԻ

Ռուս-պարսկական պատերազմը ավարտված էր: Հայաստանը մեկընդմիշտ ազատված էր Պարսկաստանի տիրապետությունից: Դարերի ընթացքում պարսիկ շահերի կողմից Պարսկաստան քշված բազմահազար հայեր ցանկանում էին վերադառնալ, վերաբնակվել իրենց հայրենիքում: Ռուսաստանի պահանջով, շահը ստիպված տվել էր իր համաձայնությունը, սակայն ամեն կերպ ձգձգում էր, արգելքներ հարուցում:

Հայրենիք վերադառնալու ցանկություն հայտնած հայերի պաշտպանությունը ստանձնեց ռուս տաղանդավոր գրող, քաղաքական գործիչ Ա. Ս. Գրիբոյեդովը, որը 1828 թ. ապրիլին Պարսկաստանում նշանակվել էր Ռուսաստանի ներկայացուցիչ: Նա փնտրում, հայտնաբերում էր հայ կանանց ու երեխաներին և պատսպարում էր ռուսական դեսպանատանը, ապա ուղարկում Հայաստան: Այդ ամենը Գրիբոյեդովը անում էր կյանքը վտանգի տակ դնելու գնով, որովհետև շահը, նրա պալատականները ու մոլլաները անընդհատ հետապնդում էին նրան: Անհանգստությունը քաղաքում աճում էր: Պատասխանատվությունից խուսափելու համար, շահը հեռացավ քաղաքից: Հարձակում էր նախապատրաստվում ռուսական դեսպանատան վրա:

1829 թ. հունվարի 30-ին, լույսը նոր էր բացվել, երբ ամբոխը մոլլաների գլխավորությամբ շրջապատեց դեսպանատունը: Նրանք պահանջում էին վերադարձնել դեսպանատանը պատսպարված հայ գերիներին, իրենց հանձնել Գրիբոյեդովին: Դեսպանատանը աշխատող ռուսներն ու հայերը, մոտ 40 հոգի, որոշեցին պաշտպանվել: Նրանք ամուր փակեցին դռները, պաշտպանական դիրք բռնեցին պատուհանների մոտ: Ռուսական դեսպանատան անձնակազմի մեջ էր նաև հայ սուրհանդակ Համբարձումը, որը հրաշքով կենդանի մնաց: Նրա պատմածի շնորհիվ է, որ հետագայում հնարավոր դարձավ վերականգնել այդ եղեռնական օրվա մանրամասնությունները:

Աղաղակների թնդյունին խառնվեցին դեպի դուռը թռչող քարերի տարափը ու առաջին կրակոցները: Ծուխով կացինների հարվածներից տապալվեց դուռը և կատաղած ամբոխը ներխուժեց դեսպանատուն: Մարտն անհավասար էր, մեկը մյուսի հետևից ընկնում էին ռուսական դեսպանատան պաշտպանները: Համարյա բոլորին կոտորելով, ամբոխը նետվեց այն սենյակը, որտեղ երկու կազակների հետ նահանջել էր Գրիբոյեդովը: Նա արդեն մի քանի տեղից վիրավորված էր, բայց շարունակում էր կրակել: Համբարձումն արեց նրա կյանքը փրկելու վերջին հուսահատ փորձը՝ մարմնով փակեց սենյակի դուռը: Սակայն երերաց գլխին իջած ծանր հարվածներից և կորցրեց գիտակցությունը: Երբ ուշքի եկավ, Գրիբոյեդովն արդեն սպանված էր:

Հաջորդ օրը տեղացի հայերը հողին հանձնեցին սպանվածներին: Գրիբոյեդովի դին փոխադրվեց Թիֆլիս: Այն բոլոր բնակավայրերում, որտեղով անցնում էր Գրիբոյեդովին տեղափոխող սայլը, հայերը հավաքվում էին նրա շուրջը, խոր վշտով և երախտագիտությամբ իրենց վերջին հրաժեշտն էին տալիս: Ականատես Վ. Գրի-




# ԳԱՐՈՒՆ Է

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Քեզ կանչում է նորից գարունը տաք՝
Իր հովերով ու իր տավիղներով
Եվ իր գետակների ձայնով հստակ,
Իր հանդերի կանաչ շավիղներով:

Մարգագետի՛ն գնա ու տե՛ս հոտեր,
Լսի՛ր՝ գառ ու ուլիկ ո՛նց են մայում,
Տե՛ս, թե ո՛նց են նախշուն հավք ու թիթեռ
Իրենց թևիկներով քեզ հմայում:

Տե՛ս, թե ո՛նց են բացվում արտերի մեջ
Խաշխաշները կարմիր ու երկնագույն,
Ո՛նց են հողին թափվում սերմ ու առէջք,
Ո՛նց են մողեսները քարին պառկում:

Բնությա՛նը նայիր մանուկ աչքով,—
Ինչ առաջին անգամ տեսնես կյանքում՝
Միշտ կմնա քո մեջ իր հրաշքով,
Իր նախնական տեսքով պարզ ու մաքուր:

# ԳԱՐՈՒՆ

ԳՐԻԳՈՐ ՄԱՋՄԱՆՅԱՆ

Երկինքն է ժպտում մանուշակի պես,
Ծառերը կանաչ երգ են սոսափում,
Բողբոջն է բացել աչիկներն իր հեզ,
Արևն է այնտեղ ծիածան կապում:

Կռունկի տաղը մաղվում է վերից,
Խառնվում առվի երգին կարկաչուն,
Ու նրբին ձայնով անուշ հովերի
Գարունը տնից քեզ դուրս է կանչում:

Ամենուր զվարթ գույների աղմուկ,
Գույների ծնունդն են տեսնում մարդիկ,
Ջրերը զվարթ գույներ են տանում,
Ջնգուն կարկաչով փռելու չորս դին:

Դալար շիվերը շրշում են քամուց,
Հուշում ականջիդ քեզ ծանոթ մի երգ:
Ծիլը ճեղքել է մայր հողը տամուկ
Ու պարզվել քնքուշ՝ ինչպես մանկան ձեռք...

Քնից սթափված դաշտերում արձակ
Խոփը բերկրանքի տողեր է շարում,
Հողի պես մարդու սիրտն էլ ջերմացած
Խինդով կանչում է՝ գարո՛ւն է, գարո՛ւն...

գորևը գրում է. «Ես ժողովրդի մեջ դեռ չէի տեսել այդպիսի միահամուռ, ընդհանուր տխրություն»: Գրիբոյեդովի աճյունը փոխադրըվեց Նախիջևան-Երևան-Էջմիածին-Սարդարաբադ-Գյումրի (Լենինական)-Ջալալօղլի (Ստեփանավան) ճանապարհով, և ողջ Հայաստանը հնարավորություն ունեցավ հրաժեշտ տալ նրան: Լոռվա սարերում Գրիբոյեդովին տանող դիասայլին ընդառաջ եկավ դեպի Էրզըրում ճանապարհորդություն կատարող Ա. Ս. Պուշկինը:

— Որտեղի՞ց եք գալիս,— հարցնում է նա:

— Թեհրանից,— պատասխանում են սայլապանները:

— Ի՞նչ եք տանում,— կրկին հարցնում է Պուշկինը:

— Գրիբոյեդովին,— պատասխանում են նրանք:

Պուշկինը ցնցված էր: Մեկ տարվա բաժանումից հետո, նա այդ հեռավո՛ր լեռներում անսպասելիորեն հանդիպում է կռիված ընկերոջը տանող դիասայլին: Հարյուր տարի անց՝ 1929 թ. այդ տխուր հանդիպման վայրում, հայ ժողովուրդը աղբյուր-հուշարձան կառուցեց: Իսկ 1974 թ. Երևանի կենտրոնում կանգնեցվեց Ա. Ս. Գրիբոյեդովի բրոնզաձույլ արձանը, որի վրա գրված է՝ «Ալեքսանդր Գրիբոյեդովին — երախտապարտ հայ ժողովրդից»:

ՎԱՐԴԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ





# ՇՆՈՐՀԱՎՈՐ

## Մայրս



Մայրս գարունն է ծաղկուն,
Գարնան պես ջերմ ու ջահել,
Բայց գարնան մեջ պաղություն կա
Եվ ձնհալի վտակներ:

Մայրս ամառն է արևոտ,
Ամռան նման կենսաբեր,
Բայց ամռան մեջ խեղդող տոթ կա
Եվ չհասած պտուղներ:

Մայրս ոսկեհեր աշունն է,
Աշնան նման պտղաբեր,
Բայց աշնան մեջ տխրություն կա
Եվ անձրևի պաղ շիթեր:

Մայրս ձմեռն է անբիծ,
Ձմռան պես ճերմակահեր,
Բայց ձմռան մեջ խստություն կա
Եվ հողմերի հառաչներ:

Մայրս արեգակն է տաք,
Անունն արևից առել
Ու իր սրտի ջերմությունն է
Զավակների մեջ շաղել:

ԱՆԱՀԻՏ ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆ
…ևանի Ն. Զարյանի անվ. դպր.
8-րդ դաս.

## ՏԱՏԻ ՆԿԱՐԸ

ՎԱՐԱԶԴԱՏ ԲԱԳՐԵՎԱՆԴՑԻ

— Տատի՛ ջան, տատի՛,—
Թոռն ասաց,— մի տե՛ս,
Քեզ եմ նկարել
Գույներով պես-պես:—
Տատը մոտ եկավ,
Ժպտաց քթի տակ.
— Բայց սև եսներկել
Մազերս ճերմակ:—
Ասաց.— Դիտմամբ եմ
Նկարել այդպես,
Որ ջահել տեսնեմ,
Տատի՛ ջան, ես քեզ:



## Իմ գուլպաները

ՎԱՂԻՆԱԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Մայրս գուլպա էր գործում
Խաս, գույնզգույն թելերից,
Ասես հյուսում էր նա վառ
Ծիածանի գույներից:

Գուլպաները իմ հագին,
Քայլում էի երբ որ ես,
Ասես քայլում էր ինձ հետ
Ծաղկունքով լի մի պարտեզ:

Ու գործում էր ու գործում
Մայրս անխոնջ ու արագ,
Հրաշքներ էր արարում
Մատներով իր հասարակ:



## ՅՈԹ ԴՍՏՐԻԿՆԵՐԸ



Մի մայր ուներ յոթ աղջիկ և մի տղա: Տղան ապրում էր հեռու մի գյուղում: Տոնական մի օր մայրը գնաց որդուն տեսության և վերադարձավ մի շաբաթ հետո: Բակում աղջիկները խմբով ընդառաջ գնացին մորը և իրար կանխելով սկսեցին պատմել, թե մոր բացակայության ժամանակ ով ինչ էր զգում:

— Ես նման էի արևից խանձված կակաչի,— ասում է առաջինը:

— Ես քեզ սպասում էի անձրևի կարոտ պապակած հողի պես,— վրա է բերում երկրորդը:

— Ես լալիս էի, բնում մենակ մնացած ձագուկի պես,— հեկեկում է երրորդը:

— Ես առանց քեզ տխուր էի, ինչպես ծաղկի կարոտ մեղուն,— ժպտում է չորրորդը:

— Ամեն գիշեր քեզ երազում էի տեսնում, ինչպես ցողի կաթիլներ երազող վարդը,— ասում է հինգերորդը:

— Քո գնալուց հետո ես նման էի սոխակից զրկված ծաղկած բալենու,— գանգատվում է վեցերորդը:

Իսկ յոթերորդ դստրիկը լուռ ու մունջ սպասում է, մինչև որ քույրերը վերջացնում են, հետո հանում է մայրիկի հագից նրա կոշիկները, ապա թասով ջուր բերում, որ մայրիկը ոտքերը լվանա:

Գերմաներենից թարգմ. ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆԸ



# ՁԵՐ ՏՈՒՆԸ, ՄԱՅՐԵՐ



## ԵՐԿՎՈՐՅԱԿՆԵՐԸ

Ն. ԱՐՏՅՈՒԽՈՎԱ

Մայրիկը ճամպրուկը փակեց և դրեց լայնեկր գըլխարկը:

— Ահա՛,— ասաց նա,— Նիկոլա՛յ և Անդրյո՛ւշա, ուշադի՛ր լսեցեք: Այստեղ, պահարանի ձախ դարակում, դրված են ժապավենները: Հենց այսօր եմ չորս մետր գնել:

— Չորս մե՞տր,— վարանացավ հայրիկը,— ինչո՞ւ այդքան շատ: Մի՞թե ամեն հյուսքին մեկ մետր է հարկավոր:

— Նրանք շատ հաճախ են կորցնում, դրա համար էլ շատ եմ գնել, երկու մետրը՝ երկնագույն, երկուսը՝ վարդագույն: Վարդագույնը՝ Վարյայի համար, երկնագույնը՝ Գալյայի: Տեսեք՝ չշփոթեք:

— Մի՛ անհանգըստացիր, ամեն ինչ կանենք: Սպասիր, ինչպես ասացի՞ր: Գալյայի... այսինքն Վարյայի համար...

Մայրիկը համբերությամբ կրկնեց.

— Վարդագույնը՝ Վարյայի, իսկ երկնագույնը՝ Գալյայի համար:

— Դե, ես գիտեմ, մայրի՛կ,— ասաց Անդրյուշան:

— Սպասի՛ր, Անդրյո՛ւշա,— հայրիկը կիտեց հոնքերը և մի քանի անգամ կրկնեց,— Գալյան՝ երկնագույն, Վարյան՝ վարդագույն, Գգգալյան՝ երկնագգգույն, Վարրրյան՝ վարրրդագույն: Հիանալի է: Եվ շատ էլ հեշտ է հիշվում:

— Հապա փորձենք,— ասաց Անդրյուշան:— Հայրի՛կ, սա ո՞վ է:

— Երկնագույն ժապավեններով է, ուրեմն Գալյան է,— անվստահ պատասխանեց հայրիկը:

— Իսկ ՝սա՞ ով է,— քրոջը ցույց տալով հարցրեց Գալյան:

— Սա էլ վարդագույն ժապավենով է, ուրեմն Վարյան է:

— Տարբերե՛ց, տարբերե՛ց,— ուրախ բացականչեցին երեխաները:— Մայրի՛կ, վերջապես տարբերեց:

Բանն այն է, որ Գալյան ու Վարյան երկվորյակներ էին և այնքան իրար նման, որ առանց ժապավեններին նայելու նրանց տարբերել կարողանում էր միայն մայրիկը: Բացի այդ, նման էին նաև նրանց բոլոր հագուստները՝ վզկապները, մուշտակները, կոշիկները ու նույնիսկ կոշկակապերը: Իսկ հայրիկը միայն վերջերս էր վերադարձել հեռավոր հյուսիսային արշավախմբից և անընդհատ շփոթում էր աղջիկներին: Ճիշտ է, նա գիտեր, թե որքան նման են երկվորյակները, բայց այնուամենայնիվ, ամեն անգամ նրանց միասին տեսնելիս օրորում էր գլուխն ու ասում.

— Բայց շա՜տ զարմանալի է: Ախր շա՜տ, շա՜տ են նման իրար:

Հայրիկը նայեց ժամացույցին և, կախիչից վերցնելով մայրիկի վերարկուն, ասաց.

— Խնդրում եմ մի՛ անհանգստացիր: Մենք ոչինչ չենք շփոթի, ամեն ինչ կանենք ինչպես հարկն է: Բացի այդ, դու մեկնում ես միայն երկու շաբաթով, և եթե մենք այդ ընթացքում մի քանի անգամ սխալմամբ Գալյային Վարյա անենք, ոչինչ էլ չի պատահի...

— Նիկոլա՛յ,— հուսահատ ասաց մայրիկը, փորձելով աջ ձեռքը մտցնել վերարկուի թևքի մեջ,— նշանակում է, դու ամեն ինչ մոռացար: Չէ՞ որ ես մի քանի անգամ կրկնեցի .բժիշկը Գալյային խորհուրդ է տվել հընարավորին չափ շատ քնել, իսկ Վարյային բոլորովին չի կարելի, և նա պետք է օրը երեք անգամ դեղ խմի...

— Հիշում եմ, հիշում եմ,— մեղավոր ձայնով պատասխանեց հայրիկը:— Ահա այս սրվակից: Մի՛ անհանգստացիր, սիրելի՛ս:

— Ամեն ինչ կանենք,— վրա բերեց Անդրյուշան:

Եվ մայրիկը մեկնեց: Դա շաբաթ օրն էր: Կիրակի առավոտյան շտապելու հարկ չկար, այդ պատճառով էլ բոլորը քնով անցան: Ասենք, նախ արթնացան երկվորյակները, որոնք նույնիսկ հաջորդ օրերին բացարձակապես տեղ չունեին գնալու: Երբ հայրիկը թաց մազերը սանրելով դուրս եկավ լողասենյակից, Վարյան արդեն հասցրել էր կորցնել ձախ հյուսքի վարդագույն ժապավենը:

— Դա կարևոր չէ,— ասաց հայրիկը,— մենք ժապավեն շատ ունենք: Ինչքա՞ն կտրենք, հր[illegible]ես մե՞-

տրր։ Հապա եկեք այստե՛ղ, աղջիկնե՛ր, ես պետք է սանրեմ ձեր մազերը։

— Հայրի՛կ,— հարցրեց Անդրյուշան,— իսկ դու կկարողանա՞ս մազերը հյուսել։

— Հուսով եմ, որ կկարողանամ։ Ես՝ շատ ավելի բարդ առաջադրանքներ եմ հաջողությամբ կատարել։

Աղջիկների փափուկ, ոսկեգույն մազերը հեշտ էին սանրվում։

— Դու ուրիշ ձևով ես հյուսում,— քիչ անց ասաց Անդրյուշան։— Մայրիկը ժապավենն էլ է մազերի հետ հյուսում, իսկ դու միայն կապել ես պոչին և վերջ։

— Այդ կարևոր չէ,— ասաց հայրիկը,— այսպես նույնիսկ ավելի գեղեցիկ է։ Տեսնո՞ւմ ես, թիթեռնիկները ինչ մեծ ստացվեցին, իսկ մայրիկի արածով համարյա չեն երևում։

— Բայց ավելի ամուր են լինում ու չեն ընկնում։

— Գիտե՞ս ինչ, Անդրե՛յ, հերիք է քննադատես։ Մայրիկն ի՞նչ է պատվիրել. որքան կարելի է շատ զբոսնել։ Այնպես որ կաթը խմելուց հետո Գալյայի հետ գնա զբոսանքի, իսկ Վարյայի հետ մենք տունը միջիչ կարգի կբերենք։

Զբոսանքից ու տունը կարգի բերելուց հետո հայրիկն ու Անդրյուշան ճաշ եփեցին, ամանները լվացին և դանակներով երկար-երկար քերում ու մաքրում էին այրված թավան։ Վերջապես հայրիկն ասաց «ո՜ւֆ» ու, գիրքը ձեռքն առնելով, պառկեց բազմոցին։ Սակայն շատ շուտով գիրքն ինքնիրեն փակվեց. հայրիկի աչքերը նույնպես փակվեցին։ Քիչ անց նա արթնացավ երեխաների աղմուկից։

— Հայրի՛կ, հայրի՛կ,— բղավում էր Անդրյուշան,— երկվորյակները կորել են։

Հայրիկը վեր թռավ տեղից։

— Ո՞վ... որտե՞ղ... բայց ահա նրանք։ Անդրյո՛ւշկա, մի՞թե կարելի է այդպես վախեցնել։

— Այսինքն ոչ թե կորել են, այլ խառնվել։ Մենք պահմտոցի էինք խաղում... ու չորս ժապավեններն էլ կորան։ Ես ասում էի, չէ՞, այդպես չպետք է կապել։

— Գա՛լյա, Վա՛լյա, հապա մոտեցե՛ք ինձ։

Հայրիկի առաջ կանգնել էին իրար միանգամայն նման երկու աղջիկները և նրան էին նայում իրար միանգամայն նման երկնագույն աչիկներով։

— Դե լավ,— ժպտաց հայրիկը,— մենք դեռ երեք ու կես մետր ունենք այդ ժապավեններից։ Ես հիմա լավ եմ հիշում. փարդագույնը՝ Վարյային, իսկ...

— Է՛խ, հայրի՛կ, հայրի՛կ։ Իսկ դու ինչպե՞ս ես տարբերելու նրանց իրարից։

— Շատ հասարակ։ Չէ՞ որ նրանք կարող են խոսել։ Արդեն մեծ աղջիկներ են։ Քո անունն ի՞նչ է։

— Ա՛յա։

— Իսկ քո՞նը։

— Ա՛յա։

Այո՛, երկուսն էլ իրենց անունները միանման էին արտասանում։ Հայրիկը մտածմունքի մեջ ընկավ։

— Լավ բան չստացվեց, Անդրյո՛ւշա, հիմա ի՞նչ անենք։ Ախր, ժամանակն է, որ Վարյան դեղ խմի, իսկ Գալյան զբոսանքի գնա։

Դռների ետևում լսվեց ծանոթ քայլերի ձայնը։

— Պապի՜կը,— ուրախ բացականչեցին երեխաները։

Պապիկը բոլորին բարևեց և սկսեց ակնոցները մաքրել։

— Ասում եք, զբոսնելու գնալ։ Դե, ահա, ես եկել եմ, որ Գալյային զբոսանքի տանեմ։ Մայրիկին խոստացել եմ։

— Դուք ճիշտ ժամանակին եկաք, Կոնստանդի՛ն Պետրովիչ,— ասաց հայրիկը,— գիտե՞ք ինչ, մենք այսինքն... Մի խոսքով, երկվորյակները խառնվել են,— և ինչ որ եղել էր, պապիկին պատմեց։

— Այդ ինչպե՞ս կարելի է, հը՛, Նիկոլա՛յ,— պապիկը կշտամբանքով նայեց հայրիկին։— Հարազատ, այսպես ասած, հայրը, հարազատ, այսպես ասած, աղջիկներին շփոթել է։

— Ի՞նչ արած, Կոնստանդի՛ն Պետրովիչ, մեղավոր եմ իհարկե։ Բայց դե, երբ ես մեկնեցի, նրանք շատ պստիկ էին։ Թույլ տվեք, Կոնստանդի՛ն Պետրովիչ, իսկ դուք ինքնե՞րդ։ Հարազատ, այսպես ասած, պապիկն եք, և հարազատ թոռնիկներին... Հապա՛, ո՞րն է Գալյան, իսկ ո՞րը՝ Վարյան։ Դե, ասե՛ք տեսնենք։

Պապիկը դանդաղ դրեց ակնոցները և նայեց թոռնիկներին։

— Ըհը՛մ, ըհը՛մ... այո՛, այսինքն... ըհը՛մ... ըհը՛մ... ակնոցներս արդեն թույլ են, լավ չեմ տեսնում։ Ա՜յ եթե ավելի ուժեղ ակնոցներ լինեին...

Անդրյուշան բոլորից բարձր ծիծաղեց։

— Իսկ դու, Անդրե՛յ, բոլորից շատ պետք է ամաչես,— ասաց հայրիկը,— ոչ մի տեղ չես մեկնել, ամեն օր նրանց տեսնում ես...

— Այո՛, այո՛,— հայրիկին պաշտպանեց պապիկը,— ակնոց չես դնում, աչքերդ լավ են տեսնում, իսկ հարազատ, այսպես ասած, քույրիկներին...

— Ես ի՞նչ,— արդարանում էր Անդրյուշան։— Ես նրանց հիվանդությունից առաջ լավ տարբերում էի, Վարյան ավելի հաստլիկ էր։ Իսկ հիվանդանոցում նրանք անհավասար նիհարեցին ու հիմա իրարից չեն տարբերվում։

Հայրիկը վճռական քայլերով մոտեցավ պահարանին և վերցրեց դեղով սրվակը։

— Դե, Վա՛րյա,— ասաց նա,— հապա արի այստե՛ղ, դեղ խմելու ժամանակն է։ Աղջիկնե՛ր, ո՞ւմ եմ այսօր առավոտյան դեղ տվել։

Գալյան ու Վարյան միմյանց նայեցին ու ոչինչ չպատասխանեցին։

— Է՛, հայրի՛կ,— շշնջաց Անդրյուշան,— մի՞թե

# ՖԼԵՅՏԱ

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

Զմրուխտ դաշտերի երկնքով արծաթ
Մի ֆլեյտա է թեթև սավառնում,
Ու երգը նրա, երգը հմայիչ,
Գայլերի հոգնած կոպերն է փակում:

Նապաստակների մորթին է ցոլում
Երգի ամեն մի ելևէջի հետ,
Ու աղվեսներն են ուրախ շողշողում,
Ոսկի են հագնում ձյուն ու արահետ:

Աստղերի պարսն է հետևում խոնարհ,
Սակայն ֆլեյտան չի տեսնում նրան,
Ինքն իր երգի մեջ սուզվել է խորունկ
Եվ արտասվում է ինչպես երեխան:

Եվ արցունքներն են հարազատ ու տաք
Գլորվում ողորկ բլուրներն ի վար,
Եվ հորինում են մի պայծառ հեքիաթ
Գայլերի քնած ձագերի համար:

Օ՜, դու, ֆլե՛յտա, արծաթ ու ոսկի,
Քամին խնդրում ու հառաչում է խեղճ.
— Տո՛ւր ինձ քո երգը, հմայքը խոսքի,
Ու ես կդառնամ քո որդին հավերժ:

Բայց նա սավառնում, իր երգն է լսում,
Ու գլորվում են արցունքները տաք,
Այնպիսի հեքիաթ չի լսել ոչ ոք
Ո՛չ մի երեխա, ո՛չ մի նապաստակ:



Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ

նրանք կասեն: Ո՞վ կցանկանա դեղ խմել, այն էլ՝ դառը:

— Ի՞նչ արած,— ասաց հայրիկը,— ուրիշ ձևով փորձենք: Հապա՛, աղջիկնե՛ր հիմա ո՞վ է պապիկի հետ սլքոսանքի գնալու: Գա՛յա, մո՛տ արի, հյուսքերդ կապեմ և մուշտակդ հագցնեմ: Դե՛:

Երեխաները նորից իրար նայեցին ու ոչ մի ձայն չհանեցին:

— Անդրյո՛ւշա,— կամացուկ հարցրեց հայրիկը,— Գայան ինչո՞ւ ձայն չի հանում: Չէ՞ որ նա սիրում է պապիկի հետ սլքոսնել:

— Իհարկե, սիրում է,— պատասխանեց Անդրյուշան:— Եթե Գայան ասի, Վարյան տանը կմնա, իսկ նա չի ուզում, դրա համար էլ չի ասում:

— Ապրի՛ Գայան,— բացականչեց հայրիկը,— գովում եմ նրան:

— Իսկ Վարյայի՞ն,— հարցրեց Անդրյուշան:— Գիտե՞ս ինչ, հայրի՛կ, երնի եթե հակառակը լիներ... Վարյան՝ սլքոսնելու, իսկ Գայան՝ դեղ խմելու... Հայրի՛կ, գտա՛: Պապի՛կ... Ես գիտեմ ինչ պետք է անել:

Անդրյուշան թռավ պահարանի մոտ:

— Ահա՛,— բավականությամբ ասաց նա և պահարանից հանեց մի մեծ քաղցրաբլիթ:— Միայն մեկն է մնացել: Հենց դա էլ մեզ պետք է: Վերցրո՛ւ,— մեկնեց նա քաղցրաբլիթը աղջիկներից մեկին:— Կիսի՛ր և կեսը տուր քրոջդ:

Երկվորյակները նույնպես բավականությամբ իրար նայեցին ու միանման ժպտացին: Աղջիկը՝ վերցրեց քաղցրաբլիթը և խնամքով կիսեց: Մի կտորը մյուսից մի քիչ մեծ եղավ, և հենց այդ կտորն էլ աղջիկը պահեց իրեն, իսկ ավելի փոքրը տվեց քրոջը:

— Վա՛րյա,— ծիծաղեց Անդրյուշան,— ահա՛ Վարյան: Շուտ կապիր վարդագույն ժապավենը, սա Վարյան է:

— Ոչինչ չհասկացա,— ասաց հայրիկը:

— Տեսար, չէ՞, հայրի՛կ, որ նա իրեն ավելի մեծ կտորը վերցրեց: Այ, եթե Գայան կիսեր, երկու կտորն էլ հավասար-հավասար կլինեին: Եթե նույնիսկ անհավասար կիսվեր, նա իրեն ավելի փոքրը կվերցներ: Այդպիսին է նա: Պապի՛կ, գնա Գայայի՛ հետ սլքոսնելու: Հայրի՛կ, Վարյային դե՛ղ տուր:

Իսկ հայրիկը քարկացել էր: Նա Վարյային նստեցրեց ծնկներին և սկսեց վարդագույն ժապավենը մայրիկի նման հյուսել ոսկեգույն մազերին, որ չկորչեր, ու տխուր ասաց.

— Է՜խ, դստրի՜կ, դստրի՜կ: Իսկ ես կարծում էի, որ դուք ամեն ինչով իրար նման եք:

Թարգմ. Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԻ




ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

— Դասերդ ո՞նց են գնում,— ասաց հայրը:

Տղան ժպտաց:

— Սովորո՞ւմ ես, թե՞ ժամանակ չի լինում գիրք բացելու:

— Մայրիկը տառերն ինձ հետ սովորեց... թե՞ գիտեր՝ հիշեց:

— Սովորել՝ է,— ասաց հայրը,— չգիտեր: Որբ աղջիկ է եղել՝ դասի չեն ուղարկել: Որ հարս եկավ, ուզում էր տառերը տան փոքրերից սովորի, իմ փոքր ախպոր ուսի վրայով գրքին թաքուն նայում էր, բայց չսովորեց... ամաչեց: Ամաչեց,— ասաց հայրը,— քեզ արդեն պիտի ունենար ու փոքրիկ աղջկա պես նրանց ուսի վրայով տառ էր գողանում: Իմ հորից ու իմ մեծ ախպորից ու բոլորից ամաչեց... մեծ ընտանիք էինք: Հիմա,— ասաց հայրը,— մեր տանը սովորել է:

— Քույրիկը գրքին նայում, տառերից վախենում ու լաց է լինում,— ժպտաց տղան,— ասում է՝ «ես դպրոց չեմ գնալու», դրբոց է ասում, դպրոցին դրբոց է ասում, ասում է՝ «ինձ կօգնե՞ս»: Հրայրին ասում է՝ «իմ տեղը դպրոց կգնա՞ս»:

Հայրն ու տղան ծիծաղեցին:

«Մայրենի լեզվի ընթերցարան» հինգ դասագիրքը տվեցին պոհվածների երեխաներին, և տղայի թաղը դասագիրք չընկավ: Տղան մի երկու անգամ գնաց հասավ ներքևի թաղերը, բայց անհարմար էր ամեն անգամ տնկվել նրանց դռներին, թե ահա ես՝ ողջ-առողջի պավակս, գերապանցիկս ու սիրվածս եկել եմ իմ դասը սովորեմ ձեր տներում: Տղան չկարողացավ ուսուցչուհուն պատճառաբանել, թե ինչու չի գնացել դասը Նորիկի գրքով սովորելու, խոստացավ գնալ և դարձյալ չգնաց: Մնում էր հույս դնել առավոտները դպրոցում փռապ սովորելու վրա: Բայց տներում ժամացույց չըկար: Սառը. մաքուր, ավլած դասարանում տղան հավաքարարուհու հետ վառարանը վառում ու սպասում էր երեխաների գալուն... Տներում ժամացույց չկար, գյուղի սառը լռության վրա պանգը մինչև չէր ղողանջում, երեխաներն իրենց տներից դուրս չէին նետվում: Գալիս էին ուշացած, երբ դասատուն արդեն դասարանում էր կամ ուսուցչանոցի դռանը սպասում էր: Իսկ եթե մեկնումեկը այնպես՝ պատահաբար,՚ պատահական որևէ պնգոցի վրա շուտ էր գալիս և նա ու տղան հավաքարարուհու հետ վառարանը դպրոցի այդ դժվար փայտով վառում էին, դարձյալ անհնար էր վառարանը թողնել, քաշվել սառն անկյուն, նստել չոր, սառը նստարանին, հակվել «Ընթերցարանի» վրա, որից ուրիշի տան հոտ էր գալիս:

Զոհվածների երեխաներին՝ «Ընթերցարանի» տերերին ասված էր, որ դասագրքերը թեկուզ նրանց են բաժանվում, դրանք ամբողջ դասարանի գրքերն են, և նրանք ասել էին՝ «այո՛», բայց նրանց մեջ ամեն անգամ ինչ-որ ատելություն էր երևում: Իսկ ուսուցիչները, և հատկապես լեզվի ուսուցչուհին, աննկատորեն էր սկսել, բայց արդեն շատ էր խոսում բարի նախանձի մասին, և ահա կարծես ատելություն ու նախանձ չկար, այլ կար միայն բարի նախանձ, և «նախանձ» բառը այդ դասարանում ինչ-որ մեղմ, ինչ-որ սիրելի, ինչ-որ օգտակար կերպարանք էր առնում... և այդ ժամանակ Աբովյան Նորիկը իր «Ընթերցարանը» չտվեց Մնացականյան Արմիկին՝ դասը կարդալու. դասարանում, դասարանային ընթերցանության ժամանակ խուլ ձևացավ կամ ատելությունից իսկապես խըլացավ ու «Ընթերցարանը» Արմիկ Մնացականյանի դեմ չդրեց, այլ մնաց այդպես՝ արմունկները բաց գրքի վրա և մատները ականջներին: Ուսուցչուհու երրորդ թե հինգերորդ պահանջի հետ՝ կտրուկ նայեց ու նրստարանի երեսով մեկ այնպես հրեց, որ «Ընթերցարանը» թռավ դասարանի մյուս անկյունը: Եվ ուսուցչուհին ասաց. «Ա՛յ թե ինչու չես, Արմիկ Մնացականյան, տնային հանձնարարությունը անում»: Մյուս օրվա դասը՝ Հովհաննես Թումանյանի «Հովվի հրաժեշտը».

Մնաք բարով, դո՛ւք, արոտնե՛ր սիրուն,
Ամառն անց կացավ, հոտն իջնում է տուն:
Մենք կգանք ձեզ մոտ նորեկ գարունքին,
Երբ պարթևեն ուրախ երգերը կրկին,
Երբ որ սարերը պուգվեն կանաչով,
Երբ որ ջրերը երգեն կարկաչով:
Մնաք բարով, դո՛ւք, նարոտնե՛ր սիրուն,
Ամառն անց կացավ, հոտն իջնում է տուն:—

ուսուցչուհին արտագրել էր և տվեց Արմիկ Մնացականյանին: Դա սքանչելի ձեռագիր էր՝ և՛ սպիտակ, մաքուր թուղթը, և՛ ուղիղ տողերը, և՛ տողանքների

Սկիզբը՝ № № 1, 2-ում:

ուղիղ ճերմակությունը, և՛ թանաքի մանուշակագույն առկայծումը, և՛ հրաժեշտի այդ վնգուն թախիծը՝ երբ ուզում ես լաց լինես ու ժպտան և կոկորդդ կլթում է... և Արմիկ Մնացականյանը պետք է ունենա այդպիսի ձեռագիր և սպիտակ մաքուր թղթին գրելու է մանուշակագույն թանաքով... Բայց մի՞թե կարելի ուսուցչուհուց ակնկալել ամբողջ դասագրքի արտագրությունը:

Եվ նա հիշեց, որ հայրը տախտակ էր ռանդում, (գուցե շինում էր իրենց տան դուռը), մայրը նրան՝ Արմիկին ամեն անգամ հանում էր հոր ոտքերի տակից, իր կարծիքով՝ կեղտ ու փոշու միջից, և ամեն անգամ նա նորից էր խցկվում փայտի այդ թարմ բուրմունքի, ռանդայի խշրտոցի ու փափուկ տաշեղի մեջ: Մատիտը հոր ականջի ետևն էր, հայրը գոգնոց էր կապել: Հայրը ձեռքերը կողերին ի վար սեղմեց, ձգվեց և արտասանեց: Արմիկ Մնացականյանը դպրոցում հետո տեսավ, որ ուսուցիչների դեմ գրատախտակի մոտ այդպես ձգվում են աշակերտները: Հայրն ահա այդպես դպրոցականորեն ձգվեց ու արտասանեց.

Է՜յ կանաչ ախպեր,
Է՜յ ճանաչ ախպեր,
Արի՛, քեզ հետ բեր
Արևի շողեր,
Բե՛ր անուշահոտ
Ծիլ, ծաղիկ ու խոտ,
Կարկաչուն վտակ,
Երկինք կապուտակ,
Գառների մայուն,
Խաղ, ուրախություն...
Է՜յ կանաչ ախպեր,
Է՜յ ճանաչ ախպեր...

Բոլոր տողերը հայրը երկարացնելով էր ասում. Բե՛ր անուշահոտ Ծիլ, ծաղիկ ու խո՛տ, Կարկաչուն վտա՛կ... Եվ հարցրեց. «Կանաչ ախպերն ո՞վ է, Արմի՛կ»: Ավելի վաղ, տղայի հիշողության սահմաններից դենը, գուցե օրորոցում՝ հայրը սովորեցրել էր, և նրանք հիմա միասին ասացին. «Գարունն է կանաչ-ճանաչ ախպերը», և իրար միասին գովեցին. «Ապրես»:

Հին այդ կանչերը տղային դասագրքի տեղ էին ցույց տալիս, սեփական, հարազատ, ընտանեցած, տոհմիկ դասագրքի, որի միջից նայելու էին Հովհաննես Թումանյանի հետ պապը, որ հիմա հանգչող ծնկները օջախին դեմ էր արել և սպասում էր պատերազմը վերջանա. տատը, որ ամեն օր գնում մատուռի շուրջը յոթ անգամ յոթ ծնկաառդ էր տալիս իր բոլոր-բոլոր կավակների՝ որդիների, դուստրերի ու թոռների համար. մեծ հորեղբայրը, որ ռազմաճակատում էր և նամակ չէր ղրկում. հայրը, որի մասին ամեն օր ասում էին գալու է և ամեն օր ասում էին ռազմաճակատ է ղրկվել. մեծ հորաքույրը, որ Դսեղ էր ամուսնացած և երեք տղա ուներ և ամուսինն, ասում էին, բանակից պիտի գա. բարի, մեղմ, սիրուն հորաքույրը, որ դարձյալ երեք տղա ուներ և ամուսինն, ասում էին, կռիվել է, բայց ավելի լավ էր դեռ չհավատալ ու երբեք չհավատալ, չլացել, հուսալ ու սպասել. Նարգիզ փոքր հորաքույրը, որ դարձյալ Դսեղ էր ամուսնացած և մի տղա ուներ և, ասում էին, լավ սովորող աղջիկ էր եղել, բայց ուսումը չէր շարունակել, որովհետև սիրահարվել էր... և փոքր հորեղբայրը, որ կարող էր բանակ չգնալ, բայց ամաչեց ու գնաց. և մեծ հորեղբոր մեծ որդին, որ պատերազմի պատճառով դպրոցից ետ էր դարձել աշխատելու, և նրա քույրերն ու եղբայրը՝ Սոխակը, Ելենը, Վալոդը... բոլո՜րը, բոլո՜րը, ովքեր գոնե մի անգամ թերթել էին այդ դասագիրքը, նայելու էին նրա էջերից և մեծ ընտանիքի նրանց բույրը տղային առնելու էր իր մեջ:

Ինչպես կատուն, որ թաքուն որևէ միտք ունի, բայց ինքն ու դու դեռ չգիտեք, թե թաքուն ինչ մտադրություն ունի և այժմ դեռ տանն է և անուշադիր դեսուդեն է գնում, տղան կատվի պես մի քիչ պտտվեց պապի-տատի, վառարանի մոտ, մի քիչ լսեց-չլսեց նրանց երանիներն ու ախուվախերը, մի քիչ հետաքրքրվեց, թե պապը Հովհաննես Թումանյանին չի՞ տեսել, և նրա պատասխանը չլսեց, հետո չքացավ:

Հին մեծ ընտանիքի միամիտ, առատ ժամանակների ցտեմարանից հացի հոտ էր գալիս: Այդ խավարի լռության մեջ տղան իրեն ապատ մկնիկ զգաց: Տղան չգիտեր, որ ջաղացպանի պես պրոտված է ելնելու ամբարից, տղան ծնկաառդ էր անում, էջեր ու գրքեր էր գտնում, բերում նայում էր լույսի բարակ. պղնձագույն շերտի մեջ, «հին աշխարհի մարդիկ կարծում էին յերկիրը մի մեծ տափարակ է», և այդ ամբողջ ժամանակ տղայի հիշողության մեջ, կարծես տղան ինքը իրենից առաջ մի անգամ արդեն ապրել էր պապի մեծ օջախում, տղայի լռության խորքերում և աչքերի ետևում խուլ կնգում, խուլ ծիծաղում, անմեղ դավեր էր անում, լուռ ժպտում, խուլ բողոքում ու լուռ արտասվում էր հին մեծ ընտանիքը. աղջիկ հորաքույրները գորգ էին ծեծում, տատը կրակի վրա ապուր էր խառնում, պապը մութքային թիկնել էր, հորեղբայրն ուզում էր ծնկին դնել իր փոքրիկին, բայց պապի ներկայությամբ քաշվում էր, փոքր հորեղբայրը տան աղմուկից թաքնվել էր տորքի ետևում և դպրոցական բերմնացին սովորում էր քույրերի ծիծաղի ու գորգի խուլ ծեծքի տակ:

Ամբարը ձեռնափայտով ծեծեցին, և տղան սուս արավ: Պապն ուրեմն կարողացել էր բարձրանալ ձեղուն: Ձեռնափայտով ամբարը ծեծեցին ու ասացին. «Էս ի՞նչ մուկ է մտել մեր ամբարը»: Տղան մանրիկ ծիծաղեց, կարծես մենակ չէր ու խավար չէր, հոր կամ հորեղբոր հետ էր, նրանք նույնպես տղա էին և, գողության մեջ բռնված, ծիծաղում էին: «Էս ի՞նչ մուկ է մեր գրքերը կրծում,— ասաց պապը,— իմ երեխանց

գրքերն էս ի՞նչ ճատիկ մուկ է կրծում. գնամ սև կատուն բերեմ ամբարը գցեմ՝ մկանն ուտի»,— ասաց պապը: Իր խավարի մեջ սկված՝ տղան այն ժամանակ որոշեց, որ պապոնց համար սահնակով փայտ է տանելու, միշտ՝ սահնակով փայտ է տանելու... և դեռ չի տարել և դեռ տանելու է: «Բա դե գցիր, է՛,— այն ժամանակ ասաց տղան,— սև կատու գցիր՝ ինձ ուտի»: «Գիտես թե ծիծաղում ե՞մ»,— ասաց պապը, և տղան մտքում կրկնեց՝ գիտես թե: «Գիտես թե գցիլ չե՞մ»,— կափարիչի բացվածքից նայեց պապը: Նա այնքան էր թույլ, որ նրա ծիծաղն ու լուրջը չէին տարբերվում: «Գիտես թե»,— մտքում կրկնեց տղան:

Սարսափելին հետո եղավ. դասագրքի բառը մի կողմ կացավ, տղայի դեմից ուղղակի ետ լողաց, և նրա տեղը հայտնվեց պապի «գիտես թե»-ն, հայտնվեց ու տղայի դեմ եզան նման պինդ նստեց: Բայց դասարանի առաջ քարտեզի մոտ կանգնած չէր կարելի ասել՝ «հին հույները գիտեին թե աշխարհը մի մեծ տափարակ է»: Տղան մեխվեց ու մնաց: Ո՛չ հիշողություն, ո՛չ լարում, ո՛չ հուշող, ո՛չ էլ ուսուցչուհու օգնություն. տղան հետո կարող էր ասել, թե տախտակի մեջ ժանգոտող մեխն ինչ է զգում և ինչ էր զգում Աշխարհիբեկ հորեղբոր գերանը, որը փռվել մնացել էր և իրեն քաշքշում էին, և ինչ էր զգում Թոփի պապի կոճը, որը տիղմի մեջ կլլվում էր և սպասում էր լրիվ կլլվի: Իսկ ուսուցչուհին ասում էր՝ «սպասում եմ», այդ հավիտենական անզգայության մեջ երբեմն ասում էր՝ «սպասում եմ»: «Նստիր,— ասաց ուսուցչուհին,— «վատ», «շատ վատ», տեղդ վե՛ր ընկիր»,— ասաց ուսուցչուհին, բայց դա այլևս սարսափելի չէր, քանի որ տղան շարժվեց ու տեսավ, որ ինքը տիղմում փռված կոճ չէ, տախտակի մեջ մեռնող մեխ չէ: «Էդ էլ ձեր գերապանցիկը»,— եկավ Նորիկի ձայնը, և տղան մտքում ձեռքը նրա ասածի վրա թափ տվեց: «Դո՛ւ արի,— եկավ ուսուցչուհու ձայնը,— տեսնենք դո՛ւ ինչ պտուղ ես»,— և Նորիկը միանգամից պատմելով գնաց. «Հին աշխարհի մարդիկ կարծում էին երկիրը տափարակ է, տափարակը կարծում էին վերջ ունի, որից հետո սկսվում է անհայտ մեծ ծովը»:

— Ես քո դասագիրքը գտա,— ասաց տղան:— Քո, մեծ հորեղբոր, հորքուրի... ձեր հին տան դասագիրքը գտա:

Հայրն ուսի վրայով ետ նայեց:

— Ամբարում էր,— ասաց տղան:— Շտեմարանին դուք ամբա՞ր չէիք ասում:

— Ինչարանին չէինք ամբար ասո՞ւմ,— բարձր ուսի վրայով ետ նայեց հայրը:

— Շտեմարանին:

— Շտեմարան,— կրկնեց հայրը:— Էդ ի՞նչն է:

— Ամբարը,— ասաց տղան:— Ամբարին դպրոցում շտեմարան ենք ասում:

— Շտեմարա՞ն,— հեգնեց հայրը,— ամբար: Չափսերը բռնել՝ փոքր էի սարքում,— ասաց հայրը:— Պապդ ասաց՝ պուճուր է, չափսերը մեծ բռնեցի: Տատդ՝ իմ մերը, ասաց՝ «Մեծ ընտանիք ենք, թոռներ են, երեխա են ունենալու, բա դա մե՞ծ օջախի ամբար է»: Ավելի մեծացրի: Հիմա էդ է տեսել ես,— ասաց հայրը:— Մեջն ի՞նչ կար:

— Հաց չկար, հացի համար չէի մտել,— ասաց տղան,— հացի հոտ էր գալիս, ինձ համար գիրք էի փնտրում: Դուք էս անցել ե՞ք,— ասաց տղան.

Երկու որբեր,
Քույր ու ախպեր,
Կորած գնում են հեռու,
Արևը վառ,
Ճամփեն երկար,
Ո՛չ աղբյուր կա, ո՛չ առու:

Հայրը դանդաղեց, կանգ առավ, ջուր եկավ, ուզեց բան ասել, լռեց: Դարձյալ ուզեց խոսել, չխոսեց:

— Էդ իմ փոքր ախպոր դասն էր,— ասաց հայրը,— քո փոքր հորեղբոր: Գնացել հին ամբարում գըտել ես: Ամաչեց՝ բանակ գնաց: Գիրքը գնացել գտել ես: Ոչ,— ասաց հայրը,— մի կարճ արանք հույս ու խաղաղություն եղավ. իմ ՝հերնումերը կարծեցին ձիերը կալերում պիտի չրխկան, ջաղացներում աղունի հերթ է լինելու, ամբարներից պիտի հացի հոտ գա: Եթե նայես ու նորից նայես... բայց չնայես, գործ չունես... հորթի ձախ ականջի ետևը թաքուն նշան եմ թողել, որ հետո եզնանց նախրի միջից ջոկեմ, բերեմ իմ դուռը: Գործ չունես: Քառանց Սարգիս պապը իրեն զութանը յուղել ու յուղած պահել է տան տակի հարկում... Թող յուղած սպասի, սպասի ու փտի դաբևոր պողպատը... Գործ չունե՞ս,— զռաց հայրը և նրա ձայնը պատառոտվեց:— Եզան փոխարեն տանում եմ մի մատն երեխային լծեմ: Ե՛տ դարձիր,— ծղրտաց հայրը, և քամին նրա ծղրտոցը պատառոտեց:

Քամին վնգում էր վերջին ծառերի մեջ, բայց անտառի պռնկից ամբողջ բաց կապույտ լանջով մինչև լեռան Կտրած թամբ՝ քամին ձյունի նույնիսկ մի քուլա չէր պոկում. լեռը սառած էր: Հաճարենիները տրնքում էին, գարնանը նրանք նորից էին տերևելու, Թամբի եղևնիները արևի մեջ էին, և այդ արևները թույլ, հեռավոր, օտարի, թշնամու կրակից եկած ցոլքեր էին թվում. անտառի պռնկից մինչև Կտրած թամբ՝ լանջի անունը Մեղրածաղկի էր... բայց հաճարենիները կարծես երբեք չէին տերևելու և լանջի անունը թշնամին էր ծաղրով Մեղրածաղկի դրել: Կեղևների մեջ ասես ծայրեծայր սառույց էր, և հաճարենիները հիմա փշուր-փշուր էին լինելու, և քամին վընգում էր սառցալույսների մեջ, և սառցալույս էր թվում սեփական ողնաշարը: Այդ է: Ուզում ես՝ մտքով գնա Թումանյանի տաք, բարի ապարանքները, ուզում ես՝ ձեռներդ քաշիր մորդ աղջկական ու քրոջդ ապագա ջրի թևերը... էդ է:

— Հո արա՞գ չենք գնում, Արմո՛,— հարցրեց հայրը:



# ԺԱՄԱՑՈՒՅՑԸ

ԳԱՐՈՒՆ ՀԱՐՅԱՆՑ

**Եթե դու նստես ցանկապատին,**
**քո երկու կողմերում**
**կլսես միապաղաղ ձայներ—**
**դա ծղրիդն է, բույսերի ժամացույցը:**

**Եթե դու կանգնես այգում,**
**Քո չորս կողմերում**
**կլսես միապաղաղ ձայներ —**
**դա ծղրիդն է, երազների ժամացույցը:**

**Եթե դու պառկես անկողնում,**
**քո ներսից կլսես**
**միևնույն ձայները —**
**դա ծղրիդն է, հեքիաթների ժամացույցը:**

Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

Հոր ետևից տղան ինքը չէր գնում, իր քայլն ու գոյությունը տղան չէր զգում, հոր ետևից տղային տանում էին ինչ-որ թելեր, բարեկամության թե ընկերության ինչ-որ կապ:

— Չափոտի արագ գնանք,— ասաց հայրը,— թե չէ կքրտնենք՝ կտա սառույց կշինի: Որ տեսնես արագանում եմ ու չես հասնում՝ ասա՛:

Դա արդեն տղայի պետքականության որոշակի ապացույց էր:

— Հեր ու տղա գնում են հնձի,— պատմեց հայրը, և տղան շեկ արտերում իսկույն տեսավ իրեն ու հորը: Հայրը ծիծաղեց:— Գնում են հնձի՝ նախ մի գդալները հանում նստում են հաց ուտում: Ամանը սրբում են: Տղեն ասում է՝ հասա թե կերանք հա՛, ա՛յ հեր: Ասում է՝ բա ես՝ առյուծ, դու՝ կորյուն, բա կուտենք, բա՛: Իրիկունը որ գալիս է,— ձայնեց հայրը,— ետ են դառնում տեսնում բան չեն հնձել: Հերն ասում է. դե ես՝ ծեր, դու էլ՝ երեխա, ի՞նչ էինք հնձելու, ա՛յ որդի:— Հայրը ծիծաղեց: Սառը, ամայի, անկենդան անտառում հայրը ծիծաղեց, բայց կարծես ծիծաղում էր շեկ արտերի մեջ:

Դա իրենց պատմությունը չէր, ինքն ու հայրը այդպես չէին լինի: Գեղեցիկ էր, որ հեր ու որդի արտում էին, որ փոքրիկ սփռոցի կողքերին իրար դեմ հեր ու որդի նստած էին, որ հերը ծեր էր և հոր ձայնը նույնպես ծեր էր... բայց դա ինքն ու հայրը չէին:

— Արմո՛,— մեղմ, կարծես ջոկելով ասաց հայրը,— ասում ես՝ ահա Հովհաննես Թումանյանը...— և հոր ձայնի մեղմությունի՞ց էր, տանջված թուխ դեմքի մեղավոր ժպիտի՞ց, թե՞ նրանից, որ ծառերի արանքով լեռան կատարը մի պահ բոցկլտաց, հոր ասելիքի դիմաց տղայի հոգում բացվեց լուսավոր, ջերմ մի հովիտ, տղան կանգնեց ինչ-որ տոնի, ինչ-որ նվերի, գարնան ինչ-որ օրվա, ինչ-որ մեղեդու առջև: Հայրը նրա ոտքերի մոտ կռացել, կապում էր նրա տրեխի քուղը, նա ձեռքի երեսով քիթը սրբում էր, բայց նրա ո՛չ ոտքերն էին այստեղ, ո՛չ քիթը և ո՛չ էլ նա զգաց, որ քուղը հայրը պինդ կապեց. որպես գարնան մաքուր քուռակ՝ կանաչների մեջ, սիրտը նրա կրծքում խաղում էր, որպես թիթեռի շրջուն սահք՝ ծաղիկների գլխով, որպես մանուշակի թաքուն բույր, որպես մեղուների խուլ ու վնգուն համերգ հովտի վրա՝ նրա հոգին բացվում ու ծավալվում էր:

— Հովհաննես Թումանյանը չգիտեմ,— խնդրեց հայրը,— դե էդ է եղել անցել է, լավ է եղել թե վատ՝ եղել է... Բայց ես ուզում եմ դու Ստյոպիկի պես տղա լինես, Ստյոպայի, Ստեփանի:

Եվ տղան իսկույն հավատաց, որ ինքը լավը չի, ինքը չկա. լավը, օրինակելին, սիրունը, ում արժանի ինքը ոչինչ-ոչինչ չուներ տալու, բայց կուզենար տալ ամեն-ամեն ինչ, Ստյոպիկն է, Ստեփանը, Ստյոպան: Արմիկ, Արմո, Արմենակ անունով պատանին դեռ չգիտեր ով է Ստեփանը, որտեղ է, ինչ է անում, բայց իսկույն ուզեց իր անունն Ստյոպա լինի:

— Որ ուզում ես՝ կդառնամ,— ասաց տղան:

Հայրը մեղավոր ու թերահավատ ժպտաց:

— Հեշտ չի,— ասաց հայրը,— դժվար է:

Այստեղ էր, այդ օրը՝ սառնամանիք քամու մեջ վնգստացող լեռան տակ սարի ճանապարհին էր, որ նրանց հեռավոր ազգականի որդին՝ Ստեփան Թոմգյանը, մտավ, գլուխը ոչխարի մկրատով խուզած, որպեսզի մազի մեջ ոջիլ չընկնի, բեռան պարանը ձիու խամուտի պես կրծքին անցկրած, մոր աղջկական ու քրոջ ապագայի դեյրան հագին, կարմիր, ճաքճքած ձեռքի երեսը փայնքոտ Արմիկ, Արմո, Արմենակ անունով տղայի կյանքը. մտավ որպես հեռուների կանչ, որպես մաքրություն, որպես կարոտ:

— Ինքը ո՞վ է,— հարցրեց տղան,— գեներալ է՞:

— Չէ,— ասաց հայրը,— կդառնա: Քո հասակի տղա է, դպրոցի աչքի լույսն է, գերազանցիկ է, ամբողջ Երևան քաղաքում մատով են ցույց տալիս, մի հատիկ է: Հանդիսավոր ժողովներում բեմ է բարձրանում ու

խոսում, արտասանում, սովորեցնում: Դու կարո՞ղ ես:— Հայրն ինքն էլ չէր կարող: Հենց միայն այդ մտքից կարելի էր քրտնել ու կարկամել: Հայրը ծիծաղեց.— Պերճիկն ու Ալիկը երկուսով մեղրի համարյա թե մի լրիվ խորիսխը կերան ու փորներին խփեցին, հերները ժպտաց, Ստեփան պապը ծիծաղեց: Բայց Ստյոպան՝ ոչ. քո հասակին է, բայց կարծես մեծ մարդ լինի, լուրջ: Իր բաժինը կերավ, «մամա, չի՞ կարելի էս մի կտորը չուտել» ու քաշվեց իր սենյակը: («Քաշվեց իր սենյակը», մտքում կրկնեց տղան): «Մամա, թույլ տալի՞ս ես էս մի կտորը չուտել», մեղրահացի մասին: Ո՛չ, այ տղա, ո՛չ,— մոլորվեց ու հիշեց հայրը,— ասավ «մամա՛, թույլ տալի՞ս եք». իրենց մի հորն ու մի մորը նրանք ասում են «եք»: Կարծես ոչ թե մի հեր ունեն, այլ մի քանի, ոչ թե մի մայր ունեն, այլ՝ մի քանի: Եվ իրոք էլ էդպես է. նրանց Ստեփան պապն ու հայրը երկուսով արդեն մի տասը մարդու ճարպկություն ունեն: Լա՛վ սովորիր, լա՛վ,— սթափվեց հայրը,— լավ չե՛ս սովորում:

Դա ճիշտ էր. Արովյան Նորիկը լավ էր սովորում, նրա ետևից՝ վատ չէր սովորում նաև տղան, Նորիկի մայրը ֆերմայի հետ Քոռի ձմեռանոցներն ուղարկվեց, Նորիկն սկսեց չսովորել, և նրա ետևից, ասես ամաչելով նրանից ընդունակ երևալ, խամրեց նաև տղան... բայց հիմա դրանից ամոթալին այն էր, որ տղան մառանի պռնճախում շշի մեջ սառած մեղր էր գտել, նկուղում, թաքուն, փչելով, ափերով, անութներով ինչքան էլ տաքացրել էր՝ մեղրը չէր հալվել, և գուլպա գործելու մոր շյուղով մեղրը հանել ու լիզել էր, խրել հանել ու լպստել էր... Տղան եթե կարողանար, ինչպես որ մուգ կանաչ շիշն էր թաքցրած մառանի պռնճախում, խայտառակ այդ արարքը կորցնել հիշողության որևէ քնջում... Տղան իրեն ատեց, կպվեց նաև գլուխը նույնպես խուզած եղբորից, որը նայում էր դունչը ջան պես թեքած, տղային հիմա թվաց, թե եղբայրն էլ գիտի մուգ կանաչ շշի տեղը: Տղան քիչ էր ապրել, վատ վարքի աղբյուրը նրա մեջ փոքր էր, տղան իրեն էր վերցնում եղբոր վատությունները նույնպես, բայց մուգ կանաչ շիշը գլուխը ցցում էր:

Իսկ հայրը դարձյալ ոսկեգույն երեք հատ մեղրահացից էր խոսում: Հոր Օհանես թե տղայի Ավետիք պապը, ավելի ճիշտ՝ թե՛ մեկը, թե՛ մյուսը և թե՛ ինքը՝ տղայի հայրը, Ստյոպայի, Պերճիկի, Ալիկի Ստեփան պապին, վաղուց, պապեպապ, պարտք էին եղել այդ մեղրահացերը, պարտք էլ չլինեին՝ խորիսխը մեր ինչի՞ն էր պետք...

— Մեր ինչի՞ն է պետք,— կրկնեց տղան:

Ավետիք պապը մեղրահացերը ղրկել էր քաղաք, և նրանց Ստեփան պապը տղայի հոր տեղը բանակում փոխել էր՝ հետևակից տարել էր հրետանի, ուր, ճիշտ է, ուղիղ նշանառության մի արկով ջարդվում էին և՛ թնդանոթը, և՛ մարդիկ, բայց պատահում էր նաև, որ արկը հեռու էր ընկնում, համենայն դեպս՝ Թոմցյան



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



Ստեփան պապի մենատնից հեռու, և նա կապուտաչյա պայծառ հավատով էր ղրկել ռազմաճակատ տղայի հորը, հորեղբորը և բոլոր ծմակուտցիներին, ովքեր մեղրահացով գնացել էին նրա ոտքը:

— Էս մի դիքն էլ դուրս գա՛նք, Արմո՛ ջան,— ասաց հայրը,— ու ամենքն իրենց տուն, կատուն հորանց տուն: Հո արա՞գ չեմ գնում:

— Խոզ էլ էի տարել,— նեղվեց ու ծիծաղեց հայրը:— Ի՞նչ գիտենայի հոտից պզվում են, ի՞նչ գիտենայի հարսը քիթը բռնելու է: Մեր կարծիքով լավ բան էի տարել,— ծիծաղեց ու նեղվեց հայրը, խուրջինն ասես դեռ ուսին ու մեղրահացի կապը ձեռքին կանգնած էր նրանց դահլիճում և բեռը չգիտեր ուր դնի:— Խոզը խանձել, կարմիր մաքրել ու տարել էի, խանձահոտից պզվեցին: Դու չես տեսել,— ասաց հայրը:— Ես ու քո մայրը գիշերով թաքուն խանձեցինք, որպեսզի խանձած կաշվից դու չուզես: Կարմիր խանձած լման խոզ էր, էդ սովի ու աղքատության միջով էդպես տեղ էի հասցրել: Ստեփան պապն ասաց՝ «Մեծ տղա ես, չգիտե՞ս, որ մենք խոզ չենք ուտում»: «Դո՛ւրս տար, դո՛ւրս տար,— ասաց,— հանի՛ր տնից»: Բայց մեղրի համար չխոսեցին: Հիմա չգիտեմ,— ասաց հայրը,— խոզն իսկապե՞ս դեն գցեցին, թե տվեցին սոված հարևան-մարևաններին: Դե էտ ուզելն անհարմար էր:

— Իրենք թուրք են, չէ՞,— ասաց տղան:— Թուրքերը խոզ չեն ուտում:

— Թուրք չեն՝ հայ: Մնացականյան մեր ցեղից:

Տղայի սիրտը ցատկեց. Մնացականյան իրենց երամի ընտիրներն ահա թռել, ճախրում են հեռուներում, Մնացականյան իր եղբայրներն ահա դահլիճներում վնգում են:

— Աֆերիստ մարդ էր,— ասաց հայրը. տղան այդ բառն առաջին անգամ էր լսում, և աֆերիստը տեղավորվեց մաքուր, լուսավոր, ճոխ, նվագուն, տաք ապարանքում, և մինչև օրս էլ տղան չի կարողանում աֆերիստը հանել թոռների վստահ գերապանցիկության, բյուրեղյա ջահերի, թոռների մոր շքեղ գեղեցկության, պապի հանգիստ բարեհոգության, թոռների հոր վուսպ, կարծես բացակա ներկայության և նուրբ, ճշգրիտ, կարծես մանրիկ, բայց խոշոր խարդախության այդ ապարանքից:

— Աֆերիստ՝ այսինքն խելացի,— ասաց հայրը,— այսինքն՝ հասկանում է ուր կանգնի, որ ոտի տակ չկորչի: Է՜, երբ էր, ես քո տարիքին էի, ասաց՝ գյուղն ապագա չունի ու քոչեց, հիմա էս օրին ենք հասել, բայց նրա խոսքի մեծ խմաստը չենք հասկանում ո՛չ ես, ո՛չ իմ հեր Ավետիքը ու ո՛չ էլ դու ես հասկանալու, Արմո՛ ջան:

Այդտեղ՝ ծմակը վերջանալուց առաջ էր, որ երեսը կուտ մոխրագույն, աղվամազը փշաքաղված, աչքերը ցրտից դուրս պրծած, գլուխը ոչխարի մկրատով խուզված ու նիհար ծոծրակը բաց տղան, սալի մի հետքին

*Ծննդյան 125-ամյակի առթիվ*








*Վինսենթ Վան-Գոգ. «Ինքնանկար»*

# ՎԻՆՍԵՆԹ ՎԱՆ-ԳՈԳ

**(1853—1890)**

Հոլանդացի մեծ նկարիչ Վինսենթ Վան-Գոգը ապրել է երեսունյոթ տարի, որից ընդամենը տաս տարի է տվել նրա ստեղծագործական կյանքը: Սակայն այդ կարճ ժամանակահատվածում նա ստեղծել է ութ հարյուր յուղաներկ կտավ և մի այդքան էլ գծանկար ու փորագրություններ:

Վան-Գոգն ապրել է խիստ լարված ու պլեկոծ մի կյանքով, որի ընթացքում գրեթե չի հասկացվել իր ժամանակակիցների կողմից, հաճախ նույնիսկ ծաղրանքի է ենթարկվել: Այնուամենայնիվ, նա, գործադրելով գերմարդկային իր եռանդը, մարդկությանը թողեց գլուխ-գործոցներ, որոնցով հպարտանում է աշխարհի ամեն մի պատկերասրահ: Նրա անձին և ստեղծագործությանը համակողմանի ծանոթանալու համար կարդացեք Իրվինգ Ստոունի «Կյանքի ծարավը» գիրքը:

*հոր դեմ կանգնած՝ շշնջաց.*

*— Ստեփան Մնացականյան, Պերճ Մնացականյան...*

*Տղային հետո թվում էր, թե հայրն այդտեղ երկար լռեց, հայրը խեղճ-խեղճ ժպտում ու ասելիքը չէր ասում:*

*— Գնացի՞նք,— ասաց հայրը:— Գնացինք-գնացի՞նք,— ասաց հայրը: Հայրը թիկունքը տղային դարձրեց. նա երևի չէր ուզում երես առ երես տեսնել լքվածի այն վիրավորանքը, որ տղայի մեջ առաջացնելու էր մաքուր ճշմարտությունը:— Թումցյան: Ազգանունները փոխել են, Թումցյան:*

*Որ նրանք գյուղը լքել են, որ իրենց ազգանունը անասնապահի իրենց շորերի հետ թողել են գյուղում, որ նրանք չեն ուզում Մնացականյան լինել՝ այդ քամահրանքը տղային ուշ, հետո, տասնամյակներ հետո խոցեց: Հիմա՝ ասլի իր հետքով հորը հավասար ու կուզահեռ գնալով որպես երիտասարդ արջառ, տղան, ծածուկ հորը նայելով, ուզեց ինքը նույնպես Թումցյան լինել, Թումցյան Ստյոպա, Թումցյան Ալիկ, Թումցյան Պերճ կամ, եթե դա նրանց ապարանքում ծիծաղելի չի հնչի, Թումցյան Արմենակ ու նրանց եղբայրը լինել... բայց հայրն այստեղ ձյուների մեջ մենակ էր մնում և գյուղում մենակ էր մնում գլուխը ոչխարի մկրատով մարգ-մարգ խուզած, անգլխարկ, դունչը թեքելով լուռ շան պես նայող եղբայրը...*

*(Շարունակելի)*



# ՏԻԴԻՏ ՀԱԿՈԲԸ

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

Երեխաները շուտ են ավելորդ անուն դնում ընկերներին, և այդ անունները արագ էլ կպչում են: Հակոբիկը վազում էր, ձեռքերով պտտում երևակայական ավտոմեքենայի ղեկանիվը, լեզվով դռռացնում, իբր ավտոմեքենա է վարում, և բարձր աղաղակում էր.

— Տիդիիի՜տ...

Խելքը թռցրել էր ավտոմեքենաների վրա, գիշեր-ցերեկ դրսում էր, անձրև լիներ՝ անձրևին էլ մեքենա էր վարում, ցեխաջրերում ետ ու առաջ էր անում, իբր ավտոմեքենան տեղապտույտ է տալիս, չի կարողանում փոսից ելնել: Շարժիչը հռնդացնում էր ծայրահեղ տագնապալի, մեքենան առաջ էր նետվում, ետընթացով կրկին ընկնում էր ցեխաջրի մեջ, կրկին առաջ էր նետվում:

— Տիդի՜տ...— դրսում, մեն-մենակ, անձրևի տակ Հակոբիկը տագնապալի ազդանշաններ էր տալիս, իսկ մյուս երեխաները նայում էին իրենց պատուհաններից, ծիծաղում էին և Հակոբիկին համարում էին անխելք երեխա:

Մինչդեռ այդպես չէր: Հետագայում նա հմուտ վարորդ պիտի դառնար, հրաշքներ պիտի գործեր չորս անիվի վրա, պտուտակ առ պտուտակ պիտի իմանար և հասկանար մեքենայից, տարիքով ու փորձառու վարորդները նրանից պիտի խորհուրդներ հարցնեին, իսկ հիմա նա երեխա է, վազում է անձրևի տակ, վարում է երևակայական ավտոմեքենան և ծնողները նույնպես տագնապով դիտում են նրան պատուհանից և մտահոգ հոգոց հանում: Նրան տուն չէին կարող կանչել, չէին կանչում, գիտեին, թե որքա՜ն հիվանդագին է ընդունում Հակոբիկը, երբ նրան ավտոմեքենայից հանում և տուն էին տանում: Նա անպայման պիտի ավարտին հասցներ խաղը, պիտի մեքենան հաներ բոլոր խութերից և կանգնեցներ այնտեղ, որտեղ պետք է կանգնի մեքենան: Ապա պիտի իջներ, սրբեր ճակատից երևակայական քրտինքը, պիտի ետ նայեր՝ արդյո՞ք անվադողերը կարգին են, և նոր միայն վաստակած տղամարդու նման պիտի մտներ տուն և ծորակի տակ պիտի լվացվեր ու ձեռքերից հոտ քաշեր, իբր բենզինոտ են:

Այդ ամենը ոչինչ, այդ ամենը կարելի է հասկանալ ու ներել, ծնողները հասկանում ու ներում էին: Միայն երբեմն նրա վարորդական ինքնասիրությունը շոյելու համար մայրը մեղմորեն ասում էր.

— Հակո՜բ ջան, տղա՛ ջան, մեքենան ափսոս է, անիվները մաշվեցին, բաքում բենզին չթողեցիր, լույսերը շատ վառելով խամրեցին, ձայնը շատ տիդիտ անելով կտրվեց, դու էլ մեղք ես, նե՜րս արի, մի կըտոր բա՛ն կեր:

— Երեք ռեյս էլ անե՜մ,— բակից կանչում էր վարորդը:

Լսողները ծիծաղում էին, ոմանք նույնիսկ չարախնդում, իսկ մայրը նորից լուրջ կանչում էր իր աշխատավոր որդուն.

— Քե՛զ էլ մատաղ, քո մեքենայի՜ն էլ, Հակո՛բ ջան, մենակ զգույշ՝ վթար չտաս, հանգիստ:

Հակոբի հայրը գլուխը տարուբերում էր, աշխատում էր չնայել որդու խաղին, բայց լսում էր նրա ու մոր զրույցը: Երկուսդ էլ նույն օրին եք, կարծես ասում էր մտախոհ տեսքը, մեկդ մյուսիդ արժեք:

Հայրը կարդացած, բանիմաց մարդ էր՝ չնայած ընդամենը թերի միջնակարգ կրթությանը: Վեր կացավ գնաց հոգեբույժի մոտ և պատմեց՝ այսպես-այսպես:

Բժիշկ հոգեբանն ասաց՝ կանցնի: Ասաց՝ մայրն էլ ճիշտ է վարվում: Չի կարելի երեխային բռնությամբ ստիպել, որ նա հրաժարվի իր սիրած խաղից: Դրանից ոչ ոք չի՛ տուժում, ասաց բժիշկը, ոչ մեկին վնաս չի՛ պատճառում, ոչ ոք չի՛ դժգոհում: Դե, ուրեմն, թող տիդիտ գռռա՝ որքան սիրտն ուզի:

Բայց իրականում տղան կարծես ձեռքից գնում էր: Դասերն էլ կարգին չէր սովորում, հազիվ «երեքի» հասցնում էր: Սակայն նա ուներ իր սիրելի գիրքը, դա հանրահայտ «Երրորդ կարգի վարորդ» ձեռնարկն էր, որ Հակոբն արդեն գիտեր անգիր: Անգամ ծանոթ վարորդները մեկ-մեկ նրան էին դիմում կեսլուրջ՝ կեսկատակ, իմանալու, թե «այդ մասին գիրքն ինչ է գրում»:

Շատերը Հակոբին էին վստահում նաև իրենց ավտոմեքենայի ղեկը, գիտեին, թե որքա՜ն շատ է նը-




շանակում դա նրա համար: Սակայն մայրուղի ելնել արգելում էին, չնայած այնպես վայելչորեն էր պտտում ղեկանիվը, այնպես վստահ ու հմտորեն էր փոփոխում արագությունները, արգելակում կամ կանգառ տալիս, որ մեծերը վստահ էին, Հակոբը կվարեր նաև հոսքի մեջ՝ մայրուղում, բայց այդ բանը թույլատրել նրանք իրավունք չունեին, չէին թույլատրում:

Դասերից հետո Հակոբը ելնում էր փողոց և կանգնած դիտում ավտոմեքենայի անցուդարձը, ղեկի մոտ նստածները նրան թվում էին աշխարհի ամենաերջանիկները:



Քեռին վարորդ էր, հպոր ու մեծ «Կռազի» վարորդ: Արձակուրդային օրերը Հակոբը քեռու մեքենայի մեջ էր անցկացնում, նրա հետ գնում էր քարհանք և մինչև ուշ երեկո մնում էր քարհանքերում: Երեկոյան վերադառնում էր հոգնած, բայց կվարթ ու գոհունակ: Քեռին ըստ երևույթին շատ էր երես տալիս Հակոբին: Ընկեր վարորդները նրան ասում էին.

— Դրա ոտքերը կարգին լծակներին չեն հասնում, ո՞նց ես դրան ղեկ վստահում: Ծա՜նր մեքենա:

Իսկ նա ասում էր.

— Ոտքերը չեն հասնում, բայց խելքն արդեն հասնում է:

Իրոք: Միայն շատ էր հուզվում, հենց անվադեկը ձեռքն էր ընկնում՝ աչքերը փայլում էին, ձուլվում էր ասես մեքենայի հետ, դառնում մի մարմին, մի ոգի, և նրա հուզմունքը կարծես փոխանցվում էր մեքենային, վիթխարի ու հպոր մեքենան երեխայական ինչ-որ բաներ էր անում, ուրիշ վարորդներ նայում ու ծիծաղում էին:

Գարնանամուտին Հակոբի քեռին ցուցակագրվեց և այլ վարորդ ընկերների հետ աշխատանքային բրիգադ կազմելով՝ մեկնեց ինչ-որ մեծ նորակառույցում աշխատելու: Նամակներ էր գրում քրոջ որդուն, պատմում էր հեռավոր երկրամասի մարդկանց ու բնության մասին, և Հակոբը քարտեզի առաջ կանգնած, հացեռով ճշգրտված կետին նայելով՝ աշխատում էր պատկերացնել, ինչպես այդ մի փոքրիկ կետում այժմ հարյուրավոր «Կռազներ» վերուվար են անում փոշու ամպերի ու քուլաների մեջ, ցեմենտ, խիճ, քար, բետոնե թափածոներ ու այլ շինանյութեր կրում վիթխարի մի հիդրոկայանի կառույցի համար:



«Երբ վերադառնամ,— գրել էր քեռին մի նամակում,— իմ սեփական ավտոմեքենան կունենամ, Հակո՛բ ջան: Այն ժամանակ, համբերի՛ր, այն ժամանակ ինչքան ուզենաս՝ կվարես ավտոմեքենան: Էլ փողոցներում տիդիտ չես կանչի, այլ իսկական մեքենայով ազդանշաններ կտաս: Այն ժամանակ տեսնեմ ո՞վ կըծիծաղի Հակոբի վրա...»

Քեռու ավտոմեքենայով վերադառնալը գնալով իրական էր դառնում. «Արդեն դրամը մուծել եմ, Հակո՛բ ջան,— գրում էր,— ուշը-ուշը՝ մի ամսից կլինեմ Երևանում: Եվ մի օր դու պատուհանից կնայես և ձեր պատուհանի տակ կանգնած կլինի մի «Ժիգուլի» ավտոմեքենա...» Հակոբը գրում էր պատասխան երկար նամակներ, քեռուն համոզում անպայման վերցնել կարմիրը: Քեռին պատասխանում էր և գրում էր կատակով. «Լավ, թող լինի կարմիր, խնձորի նման կարմիր «Ժիգուլի»՝ իմ ցնդած տիդիտ Հակոբի համար»:

Հայրն իմացավ ու դժգոհեց.

— Չեն թողնելու երեխան գոնե տասն ավարտի, ինձ նման թերի միջնակարգ են ուզում, որ մնա: Չի կարելի երեխային այդքան երես տալ:

Հակոբն ապրում էր օրերը հաշվելով: Երազելիս բերանն ակամա բացվում և աչքերը հառած երևակայական ճանապարհներին՝ բարձրաձայն աղաղակում էր.

— Տիդիի՜տ...

Բայց այլևս անհարմար էր, վեցերորդ դասարանի աշակերտ էր: Սակայն ի՞նչ աներ, ինչպե՞ս զսպեր իր ներսում ապրող և ինքնիրեն կրծքից դուրս թըռչող այդ հրճվալի աղաղակը, երբ երևակայությունը բորբոքվում էր այնքան, որ անգամ ձեռքերի մեջ զգում էր ղեկանիվի ողորկ շփումը. նայում էր և իրոք՝ մի քանի վայրկյան ձեռքերի մեջ երևում էր:

Նրա երազներում միայն ավտոմեքենաներ էին, նախկինում տարբեր գույնի, իսկ վերջին շրջանում միայն կարմիր: Նրա մեքենան սլանում էր ուրիշ մեքենաների կողքին, իսկ եթե ցանկանում էր վարորդը՝ բարձրանում էր և սլանում խցանված ճանապարհի երկայնքով՝ ներքևում թողնելով մամյանց սեղմված ավտոմեքենաներին: Միայն մի տարօրինակություն կար. երազներում ավտոմեքենան ազդանշան չէր տալիս՝ ինչքան էլ սեղմում էր կոճակին: Ճարահատյալ ինքն էր աղաղակում:

Հայրն ու մայրը նրա ձայնից արթնանում էին և մոտենում մահճակալին: Երեխան անկողնու մեջ եռում էր, շուռ ու մուռ էր գալիս, շնչում էր անհանգիստ ու երբեմն-երբեմն բարձրաձայն աղաղակում.

— Տիդիիի՜տ...

«Վերջապես...» կամ «մի օր...» ինչպե՞ս անել այդ դեպքի պատմությունը: Ուրեմն, եկավ նաև այդ օրը, ահա քեռու ավտոմեքենան կանգնած է բակում, կարմիր, իսկապես խնձորի նման, գեղեցիկ, փայլուն... Հակոբի շունչը քիչ էր մնում կտրվեր:

— Քեռի՜ն, քեռի՜ն,— կանչելով վեր թռավ ու սըլացավ բակ:

Ի՞նչ քեռի, ե՞րբ եկավ, ո՞վ ասաց, որ եկավ: Մայրը կանչեց նրա ետևից, բայց ուր... Հակոբն արդեն բակում էր, վազելով հասավ մեքենայի մոտ կանգնած տղամարդուն, համբուրեց, թե՞ գրկախառնվեց, մարդը տարակուսանքով մի կողմ գնաց, մինչդեռ Հակոբը նետվեց մեքենայի մեջ և հաջորդ ակնթարթին կար-









միր «Ժիգուլին» պոկվեց տեղից ու դուրս սուրաց բակից:

— Մեքենա՜ս...— գոռաց տղամարդը,— փախցրի՜ն... օգնեցե՜ք...

Մարդիկ դուրս թափվեցին բակ: Սակայն բակում այնպիսի անդորր էր, մարդու հավատը չէր գալիս, որ ընդամենը վայրկյան առաջ այստեղից սուր ազդանշանելով դուրս է թռել կարմիր «Ժիգուլին»:

Զանգեցին միլիցիա, հայտնեցին, որ այսինչ համարի կարմիր «Ժիգուլին» փախցրել են հենց տիրոջ աչքի առաջ: Միլիցիան անցավ գործի: Մեքենատերը կանգնեցնելով մեկ այլ մեքենա՝ ինքը ևս միացավ հետապնդողներին:

Շուտով բակ ժամանեցին միլիցիայի ներկայացուցիչները, սկսվեց հարցաքննությունը: Մեքենայի տերը քաղաքում ապարդյուն պտույտներ գործելուց հետո՝ նույնպես վերադարձավ դեպքի սկզբնավայրը: Նա ճչում և սպառնում էր: Անգամ սպառնում էր միլիցիային և ասում էր՝ եթե նրանք չգտնեն իր մեքենան, ապա ինքը կբողոքի միլիցիային: Մարդիկ ծիծաղում էին, բայց խնդրում էին լուռ մնալ, որովհետև հետապնդողները ռադիոյով հաղորդում էին հափշտակողի գտնվելու տեղի, վարքի, բռնած ուղղության և այլնի մասին: Միլիցիայի մեքենան կանգնած էր բակում, մարդիկ շրջապատել ու լսում էին:

— Հափշտակողն անցնում է Պռոշյան փողոցով: Հասավ Բարեկամության խաչմերուկը և ուղղություն վերցրեց դեպի հարավ-արևելք:

Սրա վրա էլ էին ծիծաղում, մանավանդ այդքան լուրջ, համարյա գիտական «հարավ-արևելքի» վրա: Տղիտ Հակոբն այդ ինչ դարձավ, որ միլիցիան հետապնդում է, իսկ նա իր համար շարժվում է «հարավ-արևելյան ուղղությամբ»:

— Զգո՜ւյշ եղեք,— կարգադրում էր այստեղից միլիցիայի մայորը,— չմոռանաք, որ ղեկի մոտ երեխա է, անչափահաս: Չշփոթեցնե՜ք և չվախեցնե՜ք նրան: Այդ խաղը կարող է շատ լուրջ վերջանալ:

— Հասկանում ենք, ընկե՛ր մայոր,— պատասխանում էին այնտեղից,— սակայն հափշտակողը մինչև հիմա երթևեկության կարգի ոչ մի խախտում չի արել, դա զարմանալի է և անբացատրելի:

Քիչ անց եկավ նոր հաղորդումը.

— Հափշտակողը մտավ Կիրովի փողոց, ընթանում է Չարենցի ուղղությամբ: Արագությունն է ժամում հիսուն կիլոմետր: Հափշտակողը շտապելու կամ խուճապի նշաններ ցույց չի տալիս:

Այստեղ լսում ու ծիծաղում էին:

— Քնած էր,— պատմում էր մայրը,— քնի մեջ մեկ էլ կանչեց, թե քեռիս եկել է: Ի՜նչ քեռի, ա՛յ տղա, ո՜ւր ես թռչում: Հակոբին կարո՞ղ ես կանգնեցնել:

— Իսկ ինձ ինչո՞ւ էր համբուրում,— գոռգոռում էր ավտոմեքենայի տերը,— ո՞վ է տեսել մարդու մեքենան հափշտակելուց առաջ՝ տիրոջը համբուրեն, երկու այտն էլ:

— Նա ձեզ իր քեռու տեղն է դրել: Քունը գլխին երեխան ի՞նչ է հասկանում, եղբա՛յր ջան:

— Ես ո՛չ նրա քեռին եմ, ո՛չ էլ ձեր եղբայրը,— ակամա բարեկամական կապերը հուզված մերժում էր անծանոթը:

Այդ ժամանակ եկավ հաջորդ հաղորդումը.

— Հափշտակողը Չարենցի փողոցով թեքվեց դեպի Լերմոնտով: Հիսուն մետր հեռավորությունից հետևում ենք նրան:

Այդ նշանակում էր, որ Հակոբը բոլորովին մոտ էր, մի քանի քայլի վրա: Եվ իրոք, ահա բակ մտավ կարմիր «Ժիգուլին» և նրանից, իրոք, հիսուն մետր հեռավորությունից ընթանում էր միլիցիայի դեղին «Մոսկվիչը»:

— Ոչ ոք թող ոչինչ չասի,— կարգադրեց միլիցիայի մայորը,— խնդրում եմ չխառնվել: Տեսնենք ինչպե՞ս կվարվի մեքենան հափշտակողը:

Մեքենա հափշտակողը հմայիչ թեթևությամբ շրջադարձ կատարեց և մեքենան կանգնեցրեց ճիշտ այնտեղ, որտեղից սկսել էր իր արկածային ճամփորդությունը: Հակոբը դուրս եկավ, մոտեցավ հավաքվածներին, չհասկանալով՝ ինչու բոլորն իրեն են նայում, իսկ մարդկանցից մեկը դեպի իրեն է մղվում, բռունցքն է ցույց տալիս, և մարդիկ բռնել էին նրան, բայց չէին թողնում:

— Գո՜ղ, խուլիգա՜ն, հափշտակո՜ղ,— գոռում էր այդ մարդը:— Դեռ մի թիվ չկա, մեքենա է հափշտակում: Թողե՜ք ինձ...

Հակոբը ոչինչ չէր հասկանում, բայց կռահում էր որ այդ մարդը ինչ-որ պատճառով խիստ կայրացած է իր վրա:

— Ո՞ւր է իմ քեռին,— ասաց նա:

— Քո քեռին այն մարդն է,— ասաց միլիցիայի մայորը: Նման չէ՞:

— Ո՛չ,— տարակուսեց Հակոբը:

— Բա ինչո՞ւ էիր ինձ համբուրում, հը՛, ինչո՞ւ էիր համբուրում,— գոռգոռում էր անծանոթը:

— Երկու այտն էլ,— ավելացրեց հավաքվածներից ինչ-որ մեկը:

Բոլորն աղմկում, ծիծաղում էին: Հակոբն աստիճանաբար հասկանում էր, թե ինչ է կատարվել: Մեքենայի տերն էլ իր մեքենան անվնաս տեսնելով՝ փափկեց, բարիացավ, մի երկու խրատական ծեծված խոսք ասաց ու հեռացավ իր մեքենայով:

Այդ օրը ով աշխատանքից գալիս էր, տնեցիները կատարվածի մասին էին պատմում.

— Տղիտ Հակոբը երազում տեսել է՝ իբր իր քեռին եկել է...

Եվ այլն:

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*







# ԳԵՐԱԶԱՆՑԻԿԸ

ՆՈՒՆԵ ԳՐԻԳՈՐՅԱՆ

*Մանուշակը դասարանի միակ գերազանցիկն էր և իրեն շատ լավ էր զգում:*

*Մայրիկն էլ նրա համար գեղեցիկ զգեստներ էր գնում, հպարտանում իր աղջկանով:*

*Այդ էլ քիչ բան չէր իրեն լավ զգալու համար:*

*Չնայած այդ բոլորին, դասարանում նրան չէին սիրում: Պատահեց այնպես, որ նրանց դասարանը մի նոր աշակերտուհի եկավ: Նրա հայրը աշխատանքի էր ուղարկվել այստեղ, և նրանք ընտանիքով քաղաքից գյուղ էին տեղափոխվել:*

*Մանուշակը շատ զարմացավ. «Բա մարդ էլ քաղաքից գյուղ կգա՞: Բոլորը գյուղից քաղաք են գնում, իսկ սրա՜նք...»*

*Նորեկի մեջ ամեն ինչ զարմանալի թվաց: Նախ՝ այն, որ նա ուներ շատ սովորական հայկական անուն՝ Հայկանուշ, իսկ ամենից զարմանալին այն էր, որ նա դպրոցական համազգեստով էր:*

*Մանուշակը հենց առաջին օրը հայտարարեց.*

*— Հայկանուշը իմ ընկերուհին է:*

*— Կապրենք կտեսնենք,— հեգնեց Աշոտը:— Չես էլ հարցնում նա ուզո՞ւմ է քեզ հետ ընկերություն անել:*

*— Իսկ ինչո՞ւ չէ,— զարմացավ Հայկանուշը:— Ես բոլորի հետ ընկերություն կանեմ:*

*— Բոլորի հետ՝ չգիտեմ, բայց դու դեռ դրան չես ճանաչում: Ճանաչես՝ նոր կիմանաս:*

*Անցան շաբաթներ:*

*Մի օր էլ դասարանը լուր առավ, որ Սմբատը գնացել է ձորը՝ նապաստակի որսի, ընկել է ու ոտքը կոտրվել:*

*— Բա ձորում նապաստակ լինո՞ւմ է,— հարցրեց Հայկանուշը:*

*— Երևի կա, որ գնացել է,— ասաց Մանուշակը:*



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

*— Եթե ոտքը կոտրվել է, շուտ չի լավանա,— մտահոգված ասաց Հայկանուշը:*

*— Է՛, երբ կլավանա՝ կլավանա: Թող այս տարի էլ նա դասարանում մնա: Ասում են՝ կրկնությունը գիտության մայրն է,— անտարբեր նետեց Մանուշակը:*

*— Մենք կարող ենք պարապել նրա հետ: Իսկո՞ւր ինչո՞ւ մնա: Էլ ո՞ր օրվա ընկերներ ենք:*

*Հայկանուշը զարմացած էր Մանուշակի անտարբերության վրա:*

*Իսկ դասարանցիները լուռ հետևում էին ընկերուհիների վեճին:*

*— Ի՞նչ կա որ, առարկաների մի մասը ես կպարապեմ, մյուսն էլ՝ դու,— ասաց Հայկանուշը:*

*Մանուշակը արտնեղեց.*

*— Ես ժամանակ չունեմ: Ես իմ դասերով պետք է զբաղվեմ:*

*— Մեկանից դա շատ ժամանակ չի խլի: Ամենք, օրը ժամ-ժամ ու կես,— ասաց Հայկանուշը:*

*— Երևի տղաներն էլ կուզենան օգնել: Դա նրանց էլ կստիպի, որ լավ սովորեն:*

*— Ես հասկացա,— վրա տվեց Աշոտը, դիմելով Մանուշակին:— Դու հրաժարվում ես, որովհետև ինքդ չես առաջարկել այդ... Ես քեզ հինգ մատիս պես եմ ճանաչում:*

*Մանուշակը լռեց: Նա ո՛չ Հայկանուշին պատասխանեց, ո՛չ էլ Աշոտին: Գիրքը դրեց նստարանին, բացեց, ափերով ականջները ծածկեց, սկսեց կրկնել ֆիզիկայի դասը:*

*— Դու էլ ի՞նչ ես անընդհատ Մանուշակից կպչում,— պայթած Աշոտին դարձավ Հայկանուշը:— Չի ուզում, թող չպարապի, հենց վաղվանից բոլորս կգնանք Սմբատի մոտ և կսկսենք հետը պարապել:*

*Իսկ դասարանի գերազանցիկը չմիացավ նրանց:*

*Հասկացա՞ք, թե ինչու դասարանում նրան չեն սիրում:*

# ՈՏՆԱՀԵՏՔԵՐ

ՅԱՇԱ ԲԱԲԱՅԱՆ

*Նվիրում եմ առաջին դասարանցի ԲԱԳՐԱՏԻԿԻՆ*

Ամբողջ գիշեր ձյուն է եկել և շարունակում է գալ: Զուգվել են ծառերը, պարդարվել: Աշխարհը ձերմակ խալաթ է հագել: Այնքա՜ն գեղեցիկ է ձմեռը: Հայրս ասում է. «Ձյուն չլինի, հաց էլ չի լինի, ջրերը առատ չեն լինի»: Հորս բառերն են: Ինքը մեխանիկատոր է, տրակտոր է վարում: Աշնանը հատիկը հողին պահ է տվել ու տուն եկել: Ամբողջ ձմեռ հատիկը հողում տաք-տաք կքնի: Գարունը բացվի, հողում կծլի, բոյ կքաշի ու կհասկավորվի, ինչպես տատս է ասում, մեկը հարյուր կդառնա:

Հենց որ գարունը բացվի, առուները սարերից մեկնարկ կվերցնեն: Առուների վազք: Ո՛րը շուտ կհասնի իր մայր գետակին... Բայց հիմա ձմեռ է, ձյուն է գալիս:

Քեռի Թորոսը, հրացանը ուսին, դուրս եկավ տնից: Որսի է գնում: Հիմա գնում է, երեկոյան նապաստակները շալակին տուն կվերադառնա: Ամեն հանդիպելիս ինձ խոստանում է հետը որսի տանել: Սրանից լավ օր չի լինի: Օրը կիրակի է, դաս չունենք: Հագնվում եմ ու ետևից վազում.

— Քեռի Թորո՛ս:

Կանգնում, ետ է նայում:

— Քեռի Թորո՛ս, ես էլ գամ, խոստացել ես...

— Էսօր հարմար չի, ձյունը շատ է, դժվար է քայլելը: Իսկ անտառում ավելի շատ կլինի,— փորձում է առարկել:

— Ոչինչ, քեռի՛ Թորոս, ես կըգամ քո ոտնահետքերով, չեմ դըժվարանա:

Քեռի Թորոսը, ինչպես է լինում, համաձայնում է: Առջևից ընթանում է, ինձ համար բացելով ճանապարհ: Ձյունը չի դադարել, փաթիլները ավելի են խոշորացել: Իսկ դա նշանակում է, ինչպես քեռի Թորոսն է ասում, շուտով կդադարի:

— Հենց որ դադարեց,— ասում է,— նապաստակները դուրս կգան: Ուրեմն թե որ խերով եղավ, հինգից մեկը քեզ կտամ,— շեշտում է՝ հինգից մեկը:— Գիշերը դուրս եկա, տեսա՝ ձյուն է գալիս, ուրախացա: Առավոտը կգնամ, որոշեցի, ինչ էլ որ լինի, երկուսը, երեքը կբերեմ: Ուրեմն խերո՜վ լինի, տղա՛:

— Իսկ այդ նապաստակները ձագե՞ր ունեն, քեռի՛ Թորոս,— հարցնում եմ:

— Ձագի միսն ավելի համեղ է,— ասում է:

— Բա մեղք չե՞ն, քեռի՛ Թորոս:

— Անասունը ի՞նչ մեղք,— ծիծաղում է,— դու ասա պատահեն, տղա՛, միս ունենանք, մի՞ս... Թե չէ՝ ի՞նչ մեղք, ի՞նչ կրակ:

Մեղք ու կրակ...

— Ա՛յ, այս լավ եղավ, ձյունը կտրվեց: Հիմա դուրս կգան նապաստակները, որսերս: Ուրեմն թե որ խերով եղավ, մեկը կտամ քեզ: Հինգից՝ մեկը: 10-ից՝ 2-ը: Տեսնենք...

Հեռու չէ անտառը: Մոտենում ենք: Առջևում ձյունաճերմակ թփուտներ են, բացատներ: Այստեղ ձյունն ավելի բարձր է. քամին ձյան վրա ձյուն է ցանել: Ես այլևս չեմ քայլում քեռի Թորոսի ոտնահետքերով: Չեմ ուտում: Թեկուզ դժվար է, բայց ինքս եմ բացում իմ ճանապարհը: Քեռի Թորոսը առջևում է, չի տեսնում, ետ չի նայում: Նրա ուշքն ու միտքը նապաստակներն են՝ «նապաստակներս...»

Հասանք Կլոր քարին: Անտառից բուսած մի քար, որը, կարծես, ինքն իրեն աճել է, մեծացել, կլորացել: Անտառը քոչել, նահանջել է, քարը մնացել է տեղում: Երևի ամեն ինչ տեսել է, իր քար լռությամբ տարել... Կլոր քարը:

— Հասանք,— ասում է քեռի Թորոսը,— հենց այստեղ է: Ես կբարձրանամ քարը ու պատրաստ կսպասեմ... Դու գնա Շեկ կածանո՛վ: Չեն հանելո՛վ գնա:

Ոտքերս մի կերպ քարշ եմ տալիս Շեկ կածանով: Այստեղ ձյունն այնքան շատ է, որ տեղ-տեղ խրվում եմ մինչև գոտկատեղս: Բայց գնում եմ: Լռում եմ, ձայն չեմ հանում. մեղք են նապաստակները, թող ապրեն, թող պահեն իրենց ձագերին, մեծացնեն: Թող շատանան, 100-ից մեկն էլ չեմ ուտում, 1000-ից մեկն էլ, թող ապրեն...



Երկար քայլելուց հետո, երբ արդեն անուժ էի առաջ գնալու, ետ դարձա: Քեռի Թորոսը իր տեղում չէր: Ո՞ւր է քեռի Թորոսը: Մեկ էլ ձայնը հասավ ականջիս. «Կպահեմ, կեր ու ջուր կտամ քեզ: Կլինես հորթի չափ...»

Ձայնի ուղղությամբ գնում եմ, տեսնում քեռի Թորոսը թփուտի մեջ եղնիկի մի ձագ է բռնել ու թոկով կապել: Ինձ է սպասում: Տեսավ:

— Ձեռդ չմեցի, տղա՛: Չլինի՞ գնացել շշուկով մըտադրությունս պատմել ես նապաստակներին,— արհամարհական դիմեց քեռի Թորոսը,— մեղք են, հա՞, ձագեր ունեն, հա՞...— ինձ է կրկնում, ինձ է ծաղրում:

— Նապաստակների ոչ մի հետք չկար, քեռի՛ Թորոս,— խաբում եմ,— այս կողմերում, երևի, չկան:

— Դե, դու սպասիր այստե՛ղ, այս ձագի՛ն նայիր, ես քիչ հետո կգամ:

Ու գնաց:

Ինչքա՜ն գեղեցիկ է ձագուկը: Քրոջս պես ինձ է

*նայում: Ես գրկում եմ ձագուկի գլուխը, համբուրում սառած ճակատը: Ա՜խ, դու, ձագո՛ւկ, չգիտես, թե ում ճանկն ես ընկել, քեռի Թորոսի... Քեզ կպահի, կմեծացնի, հենց որ կլինես մի հորթի չափ, միսդ կկտրի... Ցուրտ է՞, մրսում ե՞ս, ձագո՛ւկ...*

*Շրշյուն լսվեց: Շրջվում եմ: Քիչ հեռվում կանգնել է... մայրը: Հսկա եղնիկ է, բայց արի ու տես ո՞նց է խեղճացել... Ցավից տնքում է... Ձագուկը քաշում է թոկը, ուզում է ազատվել, բայց չի կարողանում: Եղնիկը լալիս է... Ես մոտիկից տեսնում եմ մոր աչքերից հոսող խոշոր կաթիլները...*

*— Փախի՜ր, եղնի՛կ,— ասում եմ:*

*Սկսում եմ քանդել հանգույցը: Եվս մի քանի վայրկյան, և նրանք միասին են: Մայրը լիզեց ձագուկի գլուխը, թառանչ արձակեց, և երկուսով փախան անտառի խորքը՝ դեպի ազատություն...*

*Քեռի Թորոսը վերադարձավ:*

*— Ո՞ւր է ձագուկը,— այնպես բղավեց, որ վախից կուչ եկա,— բաց թողիր, հա՞, մեղք էր, հա՞, դրա համար եկա՞ր:*

*Գապապեց, ու չգապապե՞ց: Թողեց ինձ ու արագ հեռացավ... դատարկ է տուն վերադառնում... Ես ետևից քարշ գալով գնում եմ, աշխատում նրան աչքից չկորցնել: Աչքիցս կորցնեմ էլ՝ ոչինչ, նրա ոտնահետքերն ինձ տուն կհասցնեն: Գիտեմ, արարքիս համար քեռի Թորոսից բացի, ո՛չ ոք չի մեղադրի:*



# ՀԱԳՆՎԵԼՈՒ ԱՐՎԵՍՏԸ

Հագուստը շատ բան է ասում մարդու մասին: Օրինակ, մեծի ձևով կարված թանկարժեք շորը, եթե տեսնում ենք անչափահաս մի աղջկա հագին սովորական մի օր, խոսում է այն մասին, որ ծնողները կատարում են աղջկա բոլոր քմահաճույքները, և որ այդպիսի հարաբերությունները ծնողների հետ լավ բանի չեն հանգեցնի:

Հագուստի պանապան ձևերի, գույների ու պուգակցումների նորաձևությունը փոփոխվում է տարին մի քանի անգամ: Սակայն մի սկզբունք անփոփոխ է մնում՝ նորաձևություններից պետք է ընտրել այն, ինչը քեզ սազում է: Բայց հագնել մի հագուստ միայն նրա համար, որ նույնիսկ ընկերուհիդ ունի, մեղմ ասած, անլուրջ բան է: Ինչ որ սազում է մեկին, կարող է բոլորովին չսազել մեկ ուրիշին: Ամեն մարդ ունի իր կազմվածքը, հասակը, աչքերի և մազերի գույնը, իրեն պահելու ձևը: Ճաշակով մարդը երբեք չի հագնի չափազանց վառ, անճոռնի գունավորումով հագուստ, որը շրջապատողների ուշադրությունը կկենտրոնացնի ոչ թե հագնողի, այլ՝ նրա կեղևի վրա:

Ասվածը վերաբերում է նաև բոլոր այն ձևերին ու զուգորդումներին, որ մենք այսօր ձեզ կցուցադրենք: Ասենք, վերադարձել եք դպրոցից, հանել եք դպրոցական համազգեստը: Ի՞նչ հագնել կրթսանքի, կինո, գրադարան կամ խանութ գնալիս: Եթե դուք որևէ սիրելի շոր ունեք, ասենք՝ չճմրթվող սինթետիկ գործվածքից կարված բաճկոնակ և ուզում եք այն հագնել, ուրեմն մնացած բոլոր մանրուքները պետք է ընտրեք այդ բաճկոնակի գույնին, ձևին համապատասխան: Նույնը կարելի է խորհուրդ տալ, օրինակ, եթե ձեզ որևէ թանկարժեք նոր շոր են նվիրել, ասենք՝ վերարկու: Ուրեմն նա ձեր զգեստեղենի մեջ գլխավորն է դառնում, հետևաբար պակաս կարևոր մանրուքները, ինչպիսիք են գուլպաները, վզնոցը և փեշը, պետք է ընտրեք նոր վերարկուին համապատասխան:

Օրինակ, այսպիսի զուգորդում կարելի է անել: Բազմագույն չթե շորը հագնել միագույն, հաստ կտորից կարված բաճկոնակի կամ սվիտերի հետ: Քառակուսիներով բաճկոնակը և ծաղկավոր շորը պետք է նախապես ստուգել՝ ներդաշնակո՞ւմ են իրար, ապա հագնել: Եթե երկու հագուստի գույները ընդհանուր են՝ բաճկոնակինը շորի հետ, կամ փեշինը սվիտերի հետ, ավելի լավ տեսք կունենան:

Միևնույն կոստյումը սովորական տեսքից կարելի է տոնականի փոխել: Բավական է մեկ-երկու մանրուք փոփոխել կամ տոնական վերնաշապիկ հագնել:

Եթե նոր հագուստ եք ուզում ձեռք բերել, անպայման խորհրդակցե՞ք մեծերի հետ: Կարող է պատահել, որ բոլոր մայրերն ու տատիկները ժամանակ չունեն նորաձևությանը հետևելու, բայց մեծերի ճաշակն ավելի կարգացած է, քան ձերը, հետևաբար նրանց կարծիքը պետք է հաշվի առնել: Եվ եթե ձեզ պգուշացնում են, որ թեթև եք հագնված, առանց հակաճառելու տաք հագնվեք: Իսկ որ ձեր շորերը պետք է ինքներդ լվանաք, մաքրեք և արդուկեք, այդ մասին, ինչ խոսք, հիշեցնելն ավելորդ է:

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*



## ՊԻՈՆԵՐ-ի փոստից

### Պարտքի տակ չմնաց

Մի անգամ ըմբշամարտի ժամանակ մեր դասարանցի Արտեմ Մամյանի ոտքը կոտրվեց, և նա երկար ժամանակ դպրոց չէր հաճախում: Մենք դասարանում հերթապահություն սահմանեցինք, և ամեն օր երկու հոգի այցելում էինք Արտեմին, դասերի տեղերն ասում, բացատրում, որպեսզի նա ետ չմնա: Հիվանդության պատճառով Արտեմը Նոր տարվա հանդեսին չէր կարող մասնակցել: Դրա համար մենք կազմակերպեցինք գեղարվեստական համարներ և Նոր տարվա նախօրյակին գնացինք Արտեմի մոտ նրան ուրախացնելու: Մինչ այդ Արտեմը լավ չէր սովորում: Որպեսզի իր պարտքը կատարի դասարանի հանդեպ, դպրոց գալու առաջին օրից նա սկսեց լավ սովորել:

Բոլորս էլ ուրախ էինք, որ նա հասկացավ ու գնահատեց մեր վարմունքը:

ՍԱՄՎԵԼ ՄԱՄՅԱՆ

*Նոյեմբերյանի № 1 միջն. դպրոց, 8-րդ դաս.*

Վ. ՍՈՒԽՈՄԼԻՆՍԿԻ

## ԵՐԱՇՏԱՀԱՎԻԿՆ ԻՆՉՈ՞Ւ ԷՐ ԼԱԼԻՍ



*Գյուղի ծայրին իրենց տնակում ապրում էին մի մարդ ու մի կին: Նրանք ունեին մի տղա, անունը՝ Միշա և մի աղջիկ անունը՝ Օլյա:*

*Տան առաջ կար բարձր, ճյուղատարած բարդի:*

*— Բարդու վրա ճոճ կապենք,— ասաց Միշան:*

*— Ինչ լա՜վ կլինի, կճոճվենք,— ուրախացավ Օլյան:*

*Միշան մագլցեց ծառը, պարանը կապեց ճյուղերից:*

*Ճոճի վրա Միշան ու Օլյան կանգնեցին և սկսեցին ճոճվել:*

*Նրանք ճոճվում էին, իսկ նրանց գլխավերևը երաշտահավիկը պտտվում էր և երգո՜ւմ, երգո՜ւմ...*

*Միշան ասաց.*

*— Երաշտահավիկն էլ է ուրախանում, որ մենք ճոճվում ենք:*

*Նայեց Օլյան բարդուն և տեսավ բարդու վրա փչակ, իսկ փչակում՝ բույն, բնում՝ փոքրիկ ձագուկներ:*

*— Երաշտահավիկը չի ուրախանում, նա լացում է,— ասաց Օլյան:*

*— Ինչո՞ւ է լացում,— զարմացավ Միշան:*

*— Մտածիր թե ինչո՞ւ,— պատասխանեց Օլյան:*

*Միշան ցած թռավ ճոճից, նայեց երաշտահավիկի բնին ու մտածեց. ինչո՞ւ է նա լացում:*

## Ծնճղուկն ու կրակը

*Ծեր մայր ճնճղուկը իր փոքրիկ ճուտիկին վերջապես թույլ է տալիս բնից դուրս թռչել: Ճուտիկն այս ու այն կողմ է թռչում, մորը շարունակ հարցնելով՝ իսկ սա ի՞նչ է, իսկ սա ի՞նչ է...*

*Մայրը նրան բացատրում է, թե ինչ է հողը, խոտը, ծառը, հավը, սագը, լճակը: Բայց ահա ճուտիկը տեսնում է կրակի մի մեծ, շատ մեծ գունդ ու հարցնում է.*

*— Իսկ սա ի՞նչ է:*

*— Արևն է,— պատասխանում է ճնճղուկը:*

*— Իսկ ի՞նչ է արևը,— դադար չի առնում ճուտիկը:*

*— Քո ի՞նչ բանն է, թե ինչ է,— փնթփնթում է իմաստուն մայր ճնճղուկը,— դա կրակ է:*

*— Ես ուզում եմ իմանալ, թե ի՞նչ բան է կրակը,— ծվծվում է ճուտիկն ու թռչում վերև, գնում է դեպի արևը, գնո՜ւմ է ու գնո՜ւմ...*

*Թռչում է այնքա՜ն, մինչև քիչ է մնում, որ այրի իր թևերի նուրբ բմբուլները: Վախեցած վերադառնում է: Մայրը սպասում էր նրան ո՛չ այն է կենդանի, ո՛չ այն է մեռած:*

*— Հիմա ես արդեն գիտեմ, թե ինչ է կրակը,— ասում է ճուտիկը:*

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



Դպրոցական «Կարմիր գիրք»



# ՃԱՀՃԱՅԻՆ ԽՆԿԵՂԵԳ

Ճահճային խնկեղեգը, կամ գիտական լեզվով՝ ակորուս կալամուսը հնում լայնորեն տարածված է եղել Արարատյան դաշտի ճահիճների, լճերի ու գետերի շրջակայքում: Դա 60—100 սմ երկարությամբ սողացող կոճղարմատով բույս է: Կոճղարմատների տրամագիծը 3 սմ է, երկարությունը՝ մինչև 3 մետր: Տերևները նեղ-գծային են, 1,5 սմ լայնությամբ, բըբածն: Ծաղկակիր ցողունը տերևի նման տափակ է, մի եզրը՝ սուր, մյուսը՝ ակոսավոր: Ծաղկաբույլը գը-

# ԲՌՆՑՔԱՄԱՐՏԻԿԸ

*Բարխուդարը ամենայն մանրամասնությամբ հիշում է, թե ինչպես ավագ եղբայրն իրեն ուղեկցեց Երևանի պատանի բռնցքամարտիկների դպրոց, իսկ երկու տարի անց բռնցքամարտիկ Բարխուդար Արզարյանին արդեն դժվարին փորձություն էր սպասում. հանրապետության հավաքականի կազմում մասնակցում էր Լվովում անցկացվող ՍՍՀՄ դպրոցականների սպարտակիադային:*

*Մրցաշարի առաջին փուլերում թեթև քաշային (48 կգ) բռնցքամարտիկը մեկը մյուսի ետևից համոզիչ հաղթանակներ տարավ: Ամենավճռական մենամարտից առաջ Բարխուդարը մտաբերում էր իր մարզիչի խոսքերը.*

*— Պետք է հանգիստ, սառնասիրտ, ուշադիր լինես ռինգում, որ կարողանաս նկատել ախոյանիդ յուրաքանչյուր, ամենաաննշան վրիպումը:*

*Իսկ ռինգում Սաիդումերովն էր (Ուզբեկստան): Բարխուդարը մարտնչում էր հանգիստ, սառնասիրտ, հաղթելու վճռականությամբ: Արզարյանի առավելությունն ակնհայտ էր: Օգտվելով հակառակորդի յուրաքանչյուր սխալից՝ Բարխուդարը փայլուն հաղթանակ տարավ ու նվաճեց ՍՍՀՄ դպրոցականների սպարտակիադայի չեմպիոնի կոչումը և լավագույն բռնցքամարտիկի համար սահմանված մրցանակը:*

*№ 104 դպրոցում սովորող 10-րդ դասարանցի, սպորտի վարպետության թեկնածու Բարխուդար Արզարյանը անցյալ տարի հաղթող դարձավ Սամարղանդ քաղաքում անցկացված պատանիների համամիութենական մրցաշարում և լուսավորության մինիստրության բռնցքամարտիկների մասնագիտացված դպրոցների առաջնությունում (Մոսկվա):*



# ԼՈՂՈՐԴՈՒՀԻՆ

*Ալվարդ Պետրոսյանը սկզբում չէր կարողանում լողալ, բայց ջանասեր էր, համառ, անկոտրում կամք ուներ: Ի վերջո, «Դելֆին» լողաոճով հաղթահարում է առաջին մետրերը: Հետո տարբեր մրցաշարերի է մասնակցում և որպես կանոն՝ միշտ երկրորդ տեղն է գրավում, սակայն չի հաշտվում այդ արդյունքի հետ, սկսում է ավելի եռանդուն մարզվել: Մի օր էլ մարզիչը՝ Ս. Սաղաթելյանը ամուր սեղմելով Ալվարդի ձեռքը՝ շնորհավորում է.*

*— Ապրե՛ս, առաջինն ես:*

*ՍՍՀՄ սպորտի վարպետության թեկնածու Ալվարդ Պետրոսյանը սովորում է № 142 դպրոցի 10-րդ դասարանում: «Դելֆին» լողաոճով 100 մ. ու 200 մ. տարածություններում Հայաստանի կանանց եռակի չեմպիոնուհին է: Իսկ նրա եղբայրը՝ Լևոնը նախանցյալ տարի Մինսկում «Դելֆին» լողաոճով 200 մետր տարածությունը առաջինն անցավ ու նվաճեց ՍՍՀՄ դպրոցականների չեմպիոնի կոչումը, ընդգրկվեց ՍՍՀՄ հավաքականի կազմում:*

*Քույր ու եղբայր իրենց հաջողությունները այսպես են բացատրում.*

*— Ոչ մի գաղտնիք չկա, պարզապես պետք է շատ պարապել: Այլապես ոչ մի բանի չես հասնի:*

*ԱՐՄԻՆԵ ՄԵՀՐԱԲՅԱՆ*

լանաձև է, վերևում նեղացած, բաց, դեպի կողմ թեքված՝ 4—6 սմ երկարությամբ:

Խնկեղեգի բուժիչ հատկություններին ծանոթ էին միջնադարի հայ բժիշկները՝ Մխիթար Հերացին, Ամիրդովլաթ Ամասիացին և ուրիշներ: Հայտնի էր, որ այս բույսի կոճղարմատները կարելի է օգտագործել ստամոքսային և նյարդային հիվանդությունների բուժման, ջերմության իջեցման, ախորժակի գրգռման և այլ նպատակներով: Ներկայումս հայտնի է, որ խնկեղեգի զանազան օրգանները և հատկապես կոճղարմատները պարունակում են եթերային յուղեր, գլյուկոզիդներ (ակորին), ալկալոիդներ (կալամին), օսլա, խեժ, դաբաղանյութեր, ֆիտոնցիդներ, կամֆորա և այլն:

Դեղագործության բնագավառից բացի, խնկեղեգը լայնորեն օգտագործվում է նաև սննդարդյունաբերության մեջ, հատկապես լիկյորներ պատրաստելու համար: Պարֆյումերիայի բնագավառում օգտագործում են օծանելիքներ, բուրավետ օճառ, ատամի փոշի պատրաստելու համար: Կաշեգործության մեջ օգտագործվում է կաշի կամ ներբանակաշի դաբաղելու համար:

Սակայն խնկեղեգը վերացել է մեր բնաշխարհից: Նրա բույսի վերջին թփուտները Էջմիածնի շրջանի Փարաքար և Արևշատ գյուղերի դաշտերում լրիվ ոչնչացվել են 1954 թվականին:

Խնկեղեգի ոչնչացման հիմնական պատճառը ոչ միայն ճահիճների չորացումն է, այլ նաև դեղագործների կողմից բույսերի անսիստեմ հավաքը: Քանի որ այդ հազվագյուտ բույսը Անդրկովկասի այլ վայրերում չէր հանդիպում, ապա դեղաբույսերի համամիութենական ինստիտուտի մասնագետները տարիներ շարունակ, առանց համապատասխան թույլտվության գալիս էին Հայաստան մեծ քանակությամբ խնկեղեգ մթերում և հումքը տանում իրենց հետ, անտեսելով այդ բույսի վերաճման հնարավորությունները: Ոչ ոք չէր բռնում նրանց ավերիչ ձեռքը, ոչ ոք այդ մասին տեղյակ չէր պահում համապատասխան կազմակերպություններին: Ընդհակառակը, երբեմն իրենք, տեղացիները էին նրանց օգնում հավաքելու խնկեղեգի հումքը: Հետևանքն այն եղավ, որ խնկեղեգն իսպառ վերացավ մեր հանրապետությունից:

Ներկայումս, երբ այլևս անհնար է վերականգնել այս հազվագյուտ տեսակի թփուտները, մենք պետք է մեր ամբողջ ուշադրությունը կենտրոնացնենք այն տեսակների պահպանության վրա, որոնք մեր անխոհեմ գործունեության հետևանքով նույնպես գտնվում են անհետացման եզրին:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր*


Լույս է տեսնում 1928 թվականից



**ՊԻՈՆԵՐ 3. 1978 Թ.**

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



*Շապիկի առաջին էջը՝ ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀԸՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գլխ. խմբագիր):

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—05—38, 56—14—96:

ՎՖ 01305: Պատվեր 13: Տպաքանակ 56000: Տպ. 3 մամ.: Ստորագրված է տպագրության 27/II 1978 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 15 Կ. ԻՆԴԵՔՍ 77806

## Հասուն արտն էր հարսի նման...

ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ

Ջեռնափայտի հետքով պապիս
Ջրերն անձայն սարը ելան,
Ասեղնագործ թաշկինակ են
Դարձել լանջի արտերը լայն:

Ասեղնագործ թաշկինակ է
Պապս վերից թափահարում,
Գերանդիները ուսերին
Մերոնք տանից դուրս են ելնում:

Գերանդիները ուսերին
Սարում պարում է տոհմը մեր,
Հասուն արտը հարսի նման
Նրան կանչում է անհամբեր:

Հասուն արտն էր հարսի նման...
Հեյ վա՜խ, պապս չկա արդեն,
Այս կուժկոտրուկ թախիծն իմ մեջ
Արթնացրել է մի հին պատկեր:

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



## ՈՒՂՏԸ

ԳԱՏԻԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Ես իմ ծնված օրից
Խաղաղ ապրել գիտեմ,
Երկար ու ձիգ ճամփան
Հանգիստ գնալ գիտեմ,
Թե որ մի քիչ շոյես,
Ուրախանալ գիտեմ,
Ամեն մի չար խոսքից
Տխրել ու լալ գիտեմ,
Ինչ որ բարձես վրաս՝
Սուս-փուս տանել գիտեմ,
Մի բուռ խոտ ու ջրով
Ես գոհանալ գիտեմ,
Թե չար կատակ անես,
Մոր պես ներել գիտեմ,

Թե չարչարես հանկարծ,
Եվ համբերել գիտեմ,
Բայց թե չափը անցար,
Նաև թքել գիտեմ,
Բեռը ուսից գցել,
Ճամփեն թեքել գիտեմ,
Ամպի նման գոռալ
Ու որոտալ գիտեմ: